

# ՊԵՏՔ Է ՍՈՎՈՐԵԼ, ԼԱՎ ՍՈՎՈՐԵԼ

ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆ

*(ՍՍՌՄ ժողովրդական նկարիչ, Լենինյան մրցանակի լաուրեատ)*

Մեր Հայաստան աշխարհը խիստ բնություն ունի, և հայ աշխատավորը իր գոյությունը պահպանելու համար միշտ էլ գերմարդկային աշխատանք է թափել։ Սակայն դա չի խանգարել, որ մեր ժողովուրդն ստեղծի ճարտարապետական անզուգական կոթողներ, նկարչական ու երաժշտական գլուխ գործոցներ, ինքնուրույն գիր ու գրականություն։

Գիրքը մեր ժողովրդի համար սրբություն է եղել։ Հայ շինականը ոսոխի ձեռքով այրած իր տնից երեխաների հետ մեկտեղ փրկել է նաև գիրքը, իսկ հայ պատանին գաղթի ճանապարհին էլ հեգել է հայերեն բառեր ու սովորել տառերը մեսրոպյան։

Այս է եղել մեր ժողովրդի կենսունակության հիմքը, այս և անսահման աշխատասիրությունը

Ինչո՞ւ եմ սրա մասին հիշեցնում ձեզ հենց այսօր։ Ուսումնական տարվա սկզբին այս մասին ես ասում եմ ձեզ, որպեսզի դուք միշտ հիշեք մի բան։ Դուք, երեխաներ, պետք է դառնաք արժանի հետնորդները մեր հոգևոր մշակույթն ստեղծած մեծերի։ Իսկ դրա համար անհրաժեշտ է սովորել, լավ սովորել։ Անհրաժեշտ է տիրապետել այն ամենին, ինչ ստեղծել է մարդկությունը։

Սովորեցե՛ք, երեխաներ, դրա համար դուք բոլոր անհրաժեշտ պայմաններն ունեք։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՈՒՆՔՆ Ի ՎԵՐ

ԻՎԱՆ ԲԱՂՐԱՄՅԱՆ

*(Սովետական Միության մարշալ)*

Սեպտեմբերի 1-ին լայնորեն բացվեցին սովետական դպրոցների դռները և մեր երջանիկ մանուկները լցվեցին ընդարձակ դասասենյակներն ու ուսումնական կաբինետները։ Լավ հանգստացած ու կազդուրված դպրոցականները նորից վերցրին դասագրքերը, և նրանց առաջ նոր էջ բացվեց գիտելիքների համար մղվող պայքարում։

Դուք, երեխաներ, պետք է միշտ հիշեք, որ գիտելիքը թև է և ընդունակ է մարդուն հանել այնպիսի բարձունքի վրա, որտեղից երևում են ապագայի անհուն հորիզոնները։ Բայց գիտելիքների տիրապետումը պահանջում է մեծ և ամենօրյա աշխատանք։ Երբ ես մտածում եմ այդ մասին, ապա գիտելիքների վրա գրոհող մարդիկ ինձ թըվում են լեռան դժվար նվաճելի գագաթը մագլցող մարտիկներ։ Թույլ հոգու տերերն ու նվնվացողները մնում են ստորոտում, ավելի հաստատակամներն ու խիզախները հասնում են մինչև լեռան կեսը, իսկ ամենահամառներին հաջողվում է նվաճել գիտելիքների բարձունքը։ Հենց սրանցից էլ դուրս են գալիս աշխատանքի հերոսներ, գիտնականներ, ինժեներներ, արվեստի վարպետներ, տիեզերագնացներ և տարբեր մասնագիտության տեր այլ ականավոր մարդիկ։

Ահա թե ինչու այսօր ուզում եմ նոր ուսումնական տարվա կապակցությամբ ոչ միայն շնորհավորել Սովետական Հայաստանի և նրա հիանալի մայրաքաղաքի աշակերտությանը, այլև ամբողջ հոգով ցանկանալ, որ նրանք չմնան կես ճանապարհին, այլ համառորեն մագլցեն գիտելիքների բարձունքն ի վեր, որովհետև առանց գիտելիքների խորը տիրապետման, չի կարելի դառնալ կոմունիստական հասարակարգի իսկական անդամ։

Ես անկեղծորեն ուրախանում և ակամայից նախանձում եմ մեր դպրոցականներին, որոնց համար սովետական իշխանությունը, կոմունիստական պարտիան ստեղծել են բոլոր հնարավորությունները։ Իսկ չէ՞ որ մեզ վիճակված էր գիտելիքներ ձեռք բերել միայն փշրանքներով սնվելու և նույնիսկ զենքը ձեռքին կռվելու գնով։



Իմ պատանի բարեկամներ, գնահատեցեք այն մեծ բարիքը, որ ձեզ համար նվաճել են ձեր հայրերն ու պապերը։ Սովորեք շատ և համառորեն։ Բոլոր սովորողներին ամբողջ հոգով ցանկանում եմ մեծամեծ հաջողություններ նոր ուսումնական տարում։

ՍԵՊՏԵՄԲԵՐ
№ 9 1963 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ




# ԵՐԴՈՒՄ

ՍՈՒՐԵՆ ԱՅՎԱԶՅԱՆ

Ամառնամուտ էր, երեկո, ակումբում պիոներական ժողով էր։ Էլեկտրական լամպը այնքան էլ պայծառ չէր լուսավորում դահլիճը։ Եվ դա կարծես թե վատ չէր։ Ամեն ինչ խաղաղության մեջ էր, խորհրդավոր. և՛ պատերը ծածկող նկարները, պլակատներն ու լոզունգները, և՛ մանավանդ, նախագահության թիկունքում, պատի վրա բաց արած դրոշը։ Դահլիճում լռություն էր։ Նույնիսկ ամենաաշխույժ պիոներն այդ պահին մեծավարի լուրջ էր։ Հանդիսավոր երդում էր տալիս հենց նոր պիոներական շարքերն անցած Մուշեղ Գալյանը։ Նա կանգնել էր դրոշի տակ, կուրծքն առաջ տված, ձեռքերը ձգած և հայացքը պատի վրա մի կետի։ Բոլորը նրան էին նայում, ես՝ Մանվելյան Մանվելին։ Նա ձախ ձեռքով բռնել էր աջ թևի արմունկը, մատը դրել բերանին ու աչքերը փակ լսում էր Մուշեղի երդումը։ Սկզբում խիստ էին նրա դեմքի կնճիռները, հետո սկսեցին ժպտալ։ Ետ գնաց բերանի անկյունի ուղիղ գիծը, ծռվեց փակագծի պես, շողաց։ Այդ շողը տվեց փակ աչքերին։ Ես դրանից իմացա, որ Մուշեղը երդման խոսքերն ասում էր սրտանց, հուզիչ այնպես, որ քեռի Մանվելի գլխի վրա մազերը շարժվեն։

Քեռի Մանվել... Նրան այդպես էին կոչում, բայց նա պիոներ էր, բոլոր օրենքներով գրանցված «Հոկհեղի» ցուցակում։ Այդպես էր, չէին կարող նրան քեռի չասել։ Նախ, որ հիսունհինգ տարեկան էր, ապա որ այս գյուղի առաջին պիոներներից էր, առաջիններից մեկը, որ հենց այս դահլիճում հանդիսավոր երդում էր տվել։ Բայց նա հետո ավելացրել էր մի խոսք, որ երդման մեջ չէր մտնում, իսկ ինքն ասել էր որպես երդում ու հավատարիմ էր մնացել այդ խոսքին։

Նա ասել էր.

— Ես մտնում եմ, որ մինչև կյանքիս վերջն էլ մնամ մեր գյուղում և «Հոկհեղի» պիոներ։

Ընկերները ծիծաղել էին։ Ծիծաղել էին կուսակցական կցվածն ու գյուղխորհրդի նախագահը։ Ինքը մնացել էր լուրջ։

Այսպես հետաքրքիր տղա էր Մանվելյան Մանվելը։ Հիմա ես նրա մասին պատմեմ ձեզ սկզբից։

* * *

Ես երկար ժամանակ էի պատրաստվում մտնելու պիոներական կազմակերպության մեջ։ Թեև արդեն տասներեք տարեկան էի, միևնույն է, հեշտ չէր։ Կամ ինձ այդպես թվում էր։ Ինչ որ տենչալի է, կարծես և անհասանելի է։ Ես տենչում էի պիոներ լինել։ Ինձ միաժամանակ թվում էր, որ եթե ղեկավարը Մանվելյան Մանվելը չլիներ, հեշտ կլիներ մտնելը։ Մանվելը խիստ էր։ Եվ այնպե՜ս էր խիստ... Հանդիսավոր երդումը, իհարկե, կարելի էր անգիր սովորել, բայց պետք է արտասանել իր հուզալի, համարձակ և առանց որևէ սխալի։ Մանվելյան Մանվելը գտնում էր, որ եթե հանդիսավոր երդումը չես արտասանում այնպես, որ իր գլխի վրա մազերը շարժվեն, ուրեմն. «Դու ամբողջ հոգով ու սրտով չես նվիրված բանվոր դասակարգի մեծ գործին»։ Նա կանգնում, ձախ ձեռքով բռնում էր աջ թևի արմունկը, ցուցամատը դնում բերանին և աչքերը փակում։ Բայց նայելով նրա փակ աչքերին, դու իմանում էիր Ման-

վելյան Մանվելի համար ընդունելի՞ է քո հանդիսավոր երդումը, թե՞ ոչ։ Կամ ճի՞շտ ես պատասխանում հարցերին, որ և՛ ինքն էր տալիս, և՛ մյուս պիոներները։ Իսկ հարցերը բոլորովին էլ հեշտ հարցեր չէին լինում։ Դու պետք է իմանայիր, թե քանի դասակարգ կա մեր երկրում։ Ապա, չշփոթելով դասակարգը դասի հետ, դու պետք է կարողանայիր թվարկել նրանց և որոշել ամեն մեկի ճակատագիրը։ Ասենք, եթե խոսում էիր միջակ դասի մասին ու ասում էիր, որ նա տատանվող դաս է, ապա պետք է կարողանայիր տրամաբանել, թե ինչու է տատանվող։

Թեև ուզում էի, որ Մանվելյան Մանվելի փոխարեն մեկ ուրիշը լիներ ղեկավարը, որ ես հեշտ անցնեի պիոներական շարքերը, միաժամանակ առանց նրա չէի պատկերացնում։ Ես նույնիսկ մտածում էի, թե ուրիշ գյուղերում ինչպես են յոլա գնում պիոներները, երբ նրանք Մանվելյան Մանվել չունեն։

Մեր շարքն անցնում էր փողոցով։ Մանվելը՝ սլացիկ հասակով մի պատանի, քայլում էր մեր առջևից ծիգ ու հպարտ և հրահանգում. «Ձա՛խ, ա՛ջ, ձա՛խ, ա՛ջ, ձա՛խ, ձա՛խ, ձա՛խ։ Աջ թևն առա՛ջ մա՛րշ։ Կա՛նգ ա՛ռ, մե՛կ, երկո՛ւ, Ցրվե՛լ»։ Այդ անզերազանցելի հրահանգից ոգևորված՝ մեր շարքը կանգ էր առնում փողոցի մեջտեղում, ապա ցրվում. մենք ծառեր էինք տնկում, կեղտոտ փողոցներն էինք կարգի գցում ու երգ էինք ասում։

Մի քանի օրից հետո նորից ժողով էր։ Հարցերը միշտ շատ էին։ Խմբագրական կոլեգիայի նախագահի զեկուցումն էր, թույլ սովորողների հարցը, և պետք է էքսկուրսիաների, ռազմախաղերի օրերը որոշեինք։ Մեր ժողովին մասնակցում էին կուսակցական կցվածը, գյուղխորհրդի նախագահը և ուսուցիչներ։ Մեզ Մանվելյան Մանվելն էր զարմացնում, որ կարողանում էր այդքան մեծ մարդկանց մոտ իրեն պահել ազատ, համարձակ և նույնիսկ պատահում էր, որ դեմ էր դուրս գալիս նրանց առաջարկին։ Ասենք՝ քննում էինք Լևոն Մայսուրյանի հարցը, որ դասերը կարգին չի սովորում։ Ընկեր Արշալույս Սալախյանն առաջարկում էր նրան հեռացնել պիոներական շարքերից։ Մենք պատրաստվում էինք հեռացնել, որովհետև դա ընկեր Արշալույսն էր պահանջում։ Բայց ահա խոսում էր Մանվելյան Մանվելը.

— Մենք մեր շարքերից դեռ չենք հեռացնի ընկեր Լևոն Մայսուրյանին։ Մենք մեր հույսերը դեռ լրիվ չենք կորցրել, որ նա կդառնա մեր ամենաօրինակելի աշակերտներից մեկը և բարձր կպահի պատանի կոմունիստի մեծ կոչումը։

Ապա դառնում էր ուղիղ Մայսուրյանին.

— Ընկե՛ր Լևոն Մայսուրյան,— ասում էր արդեն խիստ տոնով,— քո ապագան քո ձեռքին է։ Դու կարող ես դառնալ կարմիր հրամանատար, կարմիր օդաչու և կամ խորհրդային մասնագետ։ Եվ կարող ես ոչինչ էլ չդառնալ, եթե շարունակես այդպես... Հիմա կանգնիր և խոսք տուր քո ընկերների առաջ, որ սրանից հետո դասերդ կսովորես։ Ապա ո՞ւր մնաց քո հանդիսավոր երդումը... Կանգնի՛ր։

Կանգնում էր Մայսուրյանը և իսկույն չէր կարողանում խոսել։ Հետո լացակումած ձայնով ասում էր.

— Խոսք եմ տալիս։

Եվ իսկապես, մյուս օրը Մայսուրյանը դասերը լավ էր պատասխանում և մենք զարմանում էինք։ Ես այդտեղ էլ Մանվելյան Մանվելի ուժն էի տեսնում ու մտածում էի, որ նա ինչ որ ուզենա կարող է դառնալ. «կարմիր հրամանատար, կարմիր օդաչու կամ խորհրդային մասնագետ»։ Մենք դասարանից դասարան էինք փոխադրվում, մեծանում էինք, բայց Մանվելյան Մանվելը միշտ էլ մեր աչքին մնում էր անհասանելի։ Նա հիմա էլ կոմերիտական բջիջի քարտուղարն էր։ Նա էր ղեկավարում և՛ գյուղի դրամատիկական խմբակը, և՛ ինքն էր կատարում ամենալուրջ դերերը։ Նա էր միջազգային դրության մասին զեկու-



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ





# ԿՅԱՆՔԻ ՃԵՊԸՆԹԱՑԸ ՍԼԱՆՈՒՄ Է ԱՌԱՋ

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐՅԱՆ

(ՍՍՌՄ ժողովրդական արտիստ, Լենինյան մրցանակի լաուրեատ)

Իմ պատանի բարեկամներ։

Ինձ երջանիկ հնարավորություն է ընձեռնվել ողջունել ձեզ՝ Հայաստանի բոլոր դպրոցականներին՝ նոր ուսումնական տարվա առթիվ և մեծ հաջողություններ ցանկանալ ուսման գործում։

Գիտելիքներին տիրապետեք լրջորեն, ամենօրյա ուսմամբ, չվախենալով ոչ մի դժվարությունից։ Երբեք մի՛ մոռացեք, որ դպրոցական տարիներին բաց թողածը շատ դժվար է վերականգնել հետագայում։ Կյանքի ճեպընթացը ամբողջ ընթացքով սլանում է առաջ։ Կյանքից ետ չմնալու համար անհրաժեշտ է, որ ամեն օր, ամեն ժամ լրացնեք ձեր գիտելիքները։ Չէ՞ որ բոլոր գիտությունների հիմքը դրվում է դեռևս դպրոցում։

Որպես երաժիշտ, ես ուզում եմ նաև, որ իմ փոքրիկ բարեկամները սիրեն երաժշտությունը։ Երաժշտությունը ժողովրդի հոգին է։ Դարձեք երգչախմբերի և ինքնագործունեության խմբակների անդամ և զբաղվեք երաժշտությամբ։ Ձեզանից շատերը ապագայում գուցե կդառնան երաժիշտներ։ Այդ դեպքում մի՛ մոռացեք, որ լավ երաժիշտ կարելի է դառնալ միայն համառությամբ սովորելով ու քրտնաջան աշխատանքով։

Արամ Խաչատրյան

---

ցում կարդում կոմերիտականների և պիոներների ընդհանուր ժողովում։ Նա էր կազմակերպում ռազմախաղերը և առաջվա պես տանում էքսկուրսիաների։ Եվ միշտ էլ հիշեցնում էր. «Սիրեցե՛ք հայրենի գյուղը։ Ով իր գյուղը լավ չիմանա, նա իր երկիրն իմանալ չի կարող։ Ով չի սիրում հայրենի գյուղը, նա հայրենիքը սիրել չի կարող»։ Եվ ստիպում էր իմանալ գյուղի անցած-գնացած դեպքերը և այն մարդկանց կյանքի պատմությունը, որոնք պայքարել են այս լուսավոր ու երջանիկ օրերի համար։ Ստիպում էր իմանալ գյուղի հանդամասերի անունները և ճանաչել, ապա իմանալ ի՛նչ տեղերում ի՛նչ պատմական հուշարձաններ կան և նրանց պատմությունը։

*

«Ձա՛խ, ա՛ջ, ձա՛խ, ա՛ջ, ձա՛խ, ձա՛խ, ձա՛խ։ Ձախ թևն առա՛ջ մա՛րշ։ Կա՛նգ ա՛ռ. մե՛կ, երկո՛ւ։ Ցրվե՛լ...» Այս բառերը Մանվելյան Մանվելի բերանից հնչում էին այնպես, որ մեզ միշտ պահում էին մարտական վիճակում։ Հրահանգ այսքան բառերով, և նորոգվում էին գյուղի փողոցները, նոր ծառեր էին տնկվում դպրոցի շուրջը և ակումբի ու հանդամիջյան ճանապարհների եզրերին։ Հրահանգ այսքան բառերով, և մենք տասը-տասնհինգ կիլոմետր անցնում էինք սարերով ու ձորերով և երբեք չէինք հոգնում։ Եվ իմանում էինք, որ «Ահա այստեղով է անցել տասնմեկերորդ Կարմիր բանակը, որ ազատություն բերեց մեր լեռներին։ Ահա այստեղ էր, որ ջարդեց թուրքական նահանջող բանակի ջոկատներին», իսկ այս կիրճում՝ դիմադրող ներքին թշնամուն»։ Դրա հետ միասին մենք իմանում էինք, թե պատերազմների ժամանակ տեղանքն իմանալու համար թղթի վրա ինչպե՞ս են գծում բարձունքներն ու հարթավայրերը, անտառներն ու մենավոր ծառերը, եկեղեցին ու մզկիթը կամ բնակելի կետերը։ Դրա հետ միասին մենք մեր աչքերով տեսնում էինք, թե ինչպես են միջատները կամ թռչունները ու մյուս կենդանիները հարմարվում միջավայրին։ Ապա վերադառնում էինք արդեն տեղյակ մեր գյուղի «ֆաունային» ու «ֆլորային»։ Վերադառնում էինք զրնգուն երգերով, և մեր երգերը կրկնում էին իրիկնամուտի խաղաղ, լուռ ձորերը։ Գյուղին մոտենալիս մենք նորից շարք էինք կանգնում և փողոցներում նորից հնչում էր Մանվելյան Մանվելի ձայնը. «Ձա՛խ, ա՛ջ, ձա՛խ, ա՛ջ, ձա՛խ, ձա՛խ, ձա՛խ։ Աջ թևն առա՞ջ մա՛րշ։ Կա՞նգ ա՛ռ. մե՛կ, երկո՛ւ։ Ցրվե՛լ...» Դրանից հետո մտորումների անհուն նորեն երջանիկ մի կարճ պահ էր լինում, որ ընդհատվում էր խոր ու խաղաղ քնով։

* * *

Ես ձեզ հեռավոր ժամանակների բան պատմեցի։ Բայց այդ հեռավոր օրերից իմ ականջին միշտ հնչում էր Մանվելյան Մանվելի ձայնն այնպես, ասես նա միշտ իմ կողքին էր և ես նրա հրահանգով քայլում էի որպես պիոներ։ Տեսնում

էր նրա ծիգ հասակը, խրոխտ քայլվածքը, որ թվում էր, թե այդպես նա կարող էր մեզ տանել աշխարհի մյուս ծայրը և մենք երբեք չէինք հոգնի։

Վերջերս որոշեցի տեսնել Մանվելյան Մանվելին։ Գնացի գյուղ։ Ամառ էր։ Ամառը գյուղում մարդ չի լինում։ Անցնում էի փողոցից փողոց։ Այն շիվերը, որ մենք տնկել էինք Մանվելյան Մանվելի ղեկավարությամբ, հիմա հսկայական ծառեր էին ու իրենց անլռելի խշշոցով խանգարում էին ամառվա գյուղի լռությունը։ Այդ ծառերը շատ բան էին հիշեցնում անցած-գնացած օրերից։ Հանկարծ համրիչի չրխկոց եմ լսում։ Կոլտնտեսության գրասենյակից էր։ Ներս եմ մտնում։ Հաշվապահական գրասենյակի մոտից մեկն ինձ է նայում, ինչպես շատ հեռվից։ Ծանոթ է դեմքը. բայց չեմ կարողանում ճանաչել։ Երևի ինքն էլ ինձ է ուզում ճանաչել։ Այդպես են ասում նրա դեմքի կնճիռները։ Եվ համարյա միաժամանակ ճանաչեցինք իրար։ Մանվելյան Մանվելն էր։ Դե, հիմա նա այն չէր, ինչպես եղել էր։ Հիմա նա ինձ նայում էր ինչպես ճաքճքված ապակու հետևից, որ աղավաղում է դեմքը։ Երևի ես էլ նրա աչքին էի



այդպես երևում։ Այժմ նա կոլտնտեսության հաշվապահն է և անթերի կատարում է այդ դժվարին աշխատանքը։

Ես շատ մնացի գյուղում և համարյա ամեն օր հանդիպում էինք։ Բայց հաշվապահության գործերի մասին չէր, որ խոսում էինք, այլ պիոներական շարքերում անցկացրած մեր լավ, անմոռանալի օրերի։

— Դե, ես մինչև հիմա էլ նույն «Հոկհեղ» ջոկատում եմ,— ասաց Մանվելը։— Ես իմ խոսքի տերն եմ։ Առաջվա պես էքսկուրսիաներ, խաղեր, ժողովներ, շաբաթօրյակներ... Հիմա ավելի շատ են աշխատանքները։ Մի ամբողջ գյուղ ենք ձորից տեղափոխել։ Հիմա էլ այնտեղ պետք է ծառազարդենք։ Սա էլ կմնա որպես պատմություն,— հայացքով հին գյուղն է ցույց տալիս։

— Բայց հիմա կա՞ մեկը, որ կարողանա քեզ պես հրահանգ տալ, քեզ պես քայլել շարքի առջևից,— հարցնում եմ։

— Ի՞նչ ես խոսում... Միշտ էլ լավերը կան։

Մի օր Մանվելյանը ինձ պիոներական ժողով է հրավիրում։ Եվ այդտեղ էր, որ Մուշեղ Գալյանը հանդիսավոր երդում էր տալիս, իսկ Մանվելյան Մանվելը ձախ ձեռքով բռնել էր աջ թևի արմունկը, ցուցամատը դրել էր բերանին ու լսում էր՝ փակ աչքերի վրա բարի՜ ու բարի ժպիտ։ Երևի Մուշեղն այնպես էր արտասանում, որ Մանվելի գլխի վրայի մազերը շարժվում էին, և դրանից էլ նա իմանում էր, որ Մուշեղը նվիրված է «բանվոր դասակարգի վեհ գործին»։

Ամառնամուտ էր, երեկո։

## ՀԻՄՔԸ ԴՐՎՈՒՄ Է ԴՊՐՈՑՈՒՄ

ԱՐՏԵՄ ՄԻԿՈՅԱՆ

(Սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս, Գլխավոր կոնստրուկտոր)

Դպրո՜ց... Նրա հետ են կապված յուրաքանչյուրիս ամենաթանկ հիշողությունները։ Դպրոցը ամենակարևոր սանդուղքն է մարդկության զարգացման ճանապարհին։ Այստե՛ղ ենք մենք առաջին անգամ սովորում գրել տառեր, դասավորել դրանք և ստանալ բառեր, նախադասություններ։ Կարդալ սովորելով, մենք թափանցում ենք բոլոր ժողովուրդների ու բոլոր ժամանակների գրքերի աշխարհը, նրա գաղտնիքների մեջ։ Այստե՛ղ, դպրոցական լաբորատորիայում և տեխնիկական խմբակներում, դեռևս մանկական տարիներից մենք կատարում ենք առաջին երկչոտ քայլերը, որոնք տանում են դեպի գիտության բարձունքները։

Սկսելով պարապմունքները, դուք, երեխաներ, պետք է լավ հիշեք մեր թանկագին Իլյիչի մեծ պատգամները՝ սովորել, սովորել, սովորել։ Փոքրիկ Վոլոդյա Ուլյանովի կերպարը թող վառ օրինակ լինի ձեզ համար։



ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ

## ԱՇՈՒՆ

Աշուն, աշուն է նորից,
Ամպերն արծաթ են շաղում,
Սառը քամու օրորից
Ծառը ոսկի է մաղում:

Բարակել է խենթ առուն,
Կորել փեշի տակ լեռան,
Մկրատում է լուրթ հեռուն
Թռչունների մի երամ:

Կատուն թաթերը դնչին
Մրափել է պատի տակ,
Հանդարտ հալվում է մեջքին
Արեգակի ցոլքը տաք:

Աշուն, աշուն է նորից,
Ամպերն արծաթ են շաղում,
Սառը քամու օրորից
Ծառը ոսկի է մաղում:

## ԱՆՁՐԵՎ

Կանաչ դաշտը կարոտով
Նայեց ամպին ու ժպտաց.
Ամպը մի խուլ որոտով
Խոր հուզմունքից հեկեկաց:

Լռեց աղմուկն ամպերի,
Կապեց սիրուն ծիածան,
Կարկաչահոս ջրերի
Երգերն իրար միացան:

Խինդը սրտում վարարած՝
Բռնած շաղոտ մի ուղի,
Պապս ուսին բահն առած՝
Մտավ այգին մեր գյուղի...



Նկ. ՀՐԱՉՅԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ



*Ժամանակը շատ արագ է թռչում: Բայց այսօր նրանից անցնում են գերձայնային ռեակտիվ ինքնաթիռները, տիեզերական նավերը, որոնց ստեղծողները գիտական և տեխնիկական բարձր գիտելիքների տեր մարդիկ են: Իհարկե, ձեզանից շատերը ցանկանում են դառնալ նոր, անհայտ աշխարհների առաջին հայտնագործողներ: Առանց մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության ու բուսաբանության գերազանց գիտելիքների, չի կարելի հաջողության հույս ունենալ: Դպրոցում ուսման նկատմամբ լուրջ վերաբերմունքն ապահովում է հետագա բոլոր գիտությունների հաստատուն հիմքը:*

*Թանկագին երեխաներ, ի սրտե շնորհավորում եմ ձեզ նոր ուսումնական տարվա առթիվ:*

# ԱՄԵՆԱՄԵԾ ՀՐԱՇՔԸ

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Դուռն այնքան մոտ շրխկաց Վաչիկի քթին, որ եթե քիթը մի քիչ երկար լիներ, հավանորեն կմնար դռան տակ։ Բայց Վաչիկի քիթը կարճ էր, նույնիսկ մի փոքր վեր ցցված, և նա միայն վախեցած կանգ առավ։ Հետո նա հրեց դուռը և վազեց եղբոր հետևից։ Նրանք պտտվեցին սեղանի շուրջը՝ աթոռները այս ու այն կողմ քաշելով։ Այստեղ էլ Վաչիկի ոտքը սայթաքեց և նա ընկավ։

Ռուբիկը ծիծաղեց։

— Ծիծաղիր,— ասաց Վաչիկը,— բայց միևնույն է, ես քո վզակոթին մի լավ կհասցնեմ։

— Չես կարող,— նորից ծիծաղեց Ռուբիկը,— չե՛ս կարող։ Ես քեզ ճանճի նման կգցեմ ոտքիս տակ և կտրորեմ։ Ա՛յ, այսպես։

Եվ Ռուբիկը ցույց տվեց, թե ինչպես պետք է տրորի Վաչիկին։

— Կտեսնե՛նք,— տնազ արեց Վաչիկը,— ես քո վզակոթին կհասցնեմ և դեռ,— նա մի քիչ մտածեց,— գրքիդ վրա էլ թանաք կթափեմ։

Ռուբիկը ամենից շատ դրանից էր վախենում։ Նա սիրում էր գիրքը մաքուր պահել։ Վաչինը դա գիտեր և, հենց նեղն էր ընկնում, բռնում էր գրքի ու թանաքի պոչից։

— Ապա փորձիր,— անմիջապես լրջացավ նա,— եթե թեկուզ մի փոքրիկ կաթիլ թանաք լինի իմ գրքի վրա, ես քեզ նույնիսկ ճանճի պես չեմ տրորի։ Կվերցնեմ և պատուհանից դուրս կնետեմ։

— Ի՞նչ,— զարմացավ Վաչիկը,— այդ ինչպե՞ս։

— Շատ հասարակ։ Կբռնեմ ոտքիցդ, օդի մեջ կպտտեցնեմ և պատուհանից դուրս կնետեմ։

Վաչիկը պատրաստվում էր մի նոր, ավելի լավ բան ասել, բայց Ռուբիկը ամբողջ ուժով կտտացրեց նրա գլխին և դուրս փախավ։

Վաչիկը, իհարկե, կվազեր եղբոր հետևից և, եթե հասներ, կխփեր անպայման։ Բայց ոտքը ցավում էր, և նա մնաց հատակին նստած։

Մայրիկն ասում էր, որ Վաչիկը երկու տարով փոքր է Ռուբիկից, բայց երկու անգամ ավելի անկարգ է։ Բայց Վաչիկը համաձայն չէր դրան։ Նա գտնում էր, որ եթե Ռուբիկը մեծ է իրենից, ուրեմն և ավելի անկարգ է։ Երկու տարի հետո, երբ ինքը կդառնա Ռուբիկի հասակին, նոր միայն նրա չափ անկարգ կլինի։ Բայց քանի որ Ռուբիկն էլ երկու տարով կմեծանա, ուրեմն միշտ էլ ավելի անկարգ կլինի, քան ինքը։

Վաչիկը փորձեց ոտքի կանգնել, բայց ոտքը առաջվա նման ցավում էր։ Նա մտածեց, որ կգնա և Ռուբիկի գրքի վրա այնքան թանաք կթափի, որ բիծը տասն անգամ ավելի մեծ լինի, քան անցյալ անգամվանը։ Վաչիկը այդպես մտածեց, և ոտքի ցավն անցավ։

Նա անմիջապես ծլկեց մյուս սենյակը, բացեց Ռուբիկի դասագիրքը և թանաքամանը շրջեց էջի վրա։ Թանաքը սկզբում լճացավ, հետո ներծծվեց և բռնեց էջի կեսը։ Վաչիկը սարսափելի վախեցավ և գիրքը անմիջապես փակեց։

Հենց այդ ժամանակ ներս մտավ Ռուբիկը։

— Տե՛ս,— ասաց նա,— եթե իմ գրքի վրա թանաք թափես, քեզ կծեծեմ։

— Իսկ ես հայրիկին կասե՛մ,— անմիջապես վրա տվեց Վաչիկը։

— Ասա՛, բայց, միևնույն է, կծեծեմ։

Վաչիկը ուզում էր սուսուփուս հեռանալ։ Նա զգում էր, որ մեղավոր է և դրա համար էլ ուզում էր լռել։ Բայց չհամբերեց և ասաց.

— Չե՛ս կարող։

Ռուբիկը մեծ էր Վաչիկից։ Նրան վիրավորական էր թվում, որ Վաչիկը չի հասկանում, որ ինքը ավելի ուժեղ է և կարող է ծեծել։ Նրան հիմա էլ այդպես թվաց։

— Կարո՛ղ եմ,— ասաց նա։

— Չե՛ս կարող։ Եթե նույնիսկ մի մատով, միայն մի մատով կպնես ինձ, ես քո քիթը կջարդեմ։

— Ահա՛,— ասաց Ռուբիկը։

Նա մատը դիպցրեց Վաչիկի կրծքին։

Վաչիկը արդեն բոլորովին մոռացավ և՛ գրքի, և՛ թանաքի մասին։ Նրան հիմա միակ մեղավորը Ռուբիկն էր թվում, և նա ասաց.

— Մեկ էլ փորձիր։

Եվ Ռուբիկը նորից փորձեց։

Դա Վաչիկին արդեն չափից ավելի թվաց, և նա հարձակվեց Ռուբիկի վրա։ Վաչիկը բռնեց Ռուբիկի ոտքերից, Ռուբիկն էլ՝ Վաչիկի մեջքից, և նրանք թավալվեցին հատակին։

Աղմուկի վրա ներս մտավ հայրիկը։ Նա բռնեց Վաչիկի ականջից, և Վաչիկը հասակով գրեթե հավասարվեց Ռուբիկին։ Հետո հայրիկը երկուսին էլ տարավ սեղանի մոտ՝ ճաշելու։

— Այս քեզ սկզբի համար,— շշնջաց Ռուբիկը,— իսկ երբ թանաք թափես, ավելին կստանաս։

— Չե՛ս կարող,— լեզու հանեց Վաչիկը,— իսկ թանաքը ես արդեն թափել եմ։ Հենց այսօրվա դասիդ...

Բայց նա չկարողացավ վերջացնել։ Ռուբիկը սեղանի տակից խփեց նրա ոտքին, և Վաչիկը ինչ-որ անորոշ ձայն հանեց։

— Դու որևէ բա՞ն էիր ուզում ասել,— հարցրեց հայրիկը։

Վաչիկը անհանգիստ շարժվեց աթոռի վրա և չկարողացավ պատասխանել։

— Դե նա ի՞նչ կարող է ասել,— առիթից օգտվեց Ռուբիկը,— նա շատ վատ հիմար է։

Այս անգամ վեր թռչելու հերթը Ռուբիկինն էր։

— Ինչո՞ւ խփեցիր,— բարկացավ հայրիկը։

— Նա ինձ «շատ վատ հիմար» անվանեց։

— Որովհետև ինքը թանաք է թափել գրքիս վրա։

— Ռուբիկը ուզում էր ինձ պատուհանից դուրս նետել,— գոռաց Վաչիկը։

Հայրիկը երկար խրատեց նրանց։ Վաչիկը գտնում էր, որ այդ բոլորը պետք է Ռուբիկին ասել։ Ռուբիկն էլ հավատացած էր, որ եթե որևէ մեկը որևէ բանում մեղավոր է, ապա դա Վաչիկն է։ Ախր եթե նա չլիներ, ինքը ոչ ոքի հետ չէր կռվի, թեև առանց Վաչիկի, կյանքը հավանորեն շատ տխուր կլիներ։

Ճաշից հետո Վաչիկը տեղավորվեց պատուհանի մոտ և փորձեց դաս սովորել։ «Շատ վատ հիմար...— մտածեց նա։— Իսկ մի՞թե լավ հիմարներ լինում են։ Ախր հիմարը հիմար է, և լավ հիմարը ոչընչով լավ չէ վատ հիմարից»։ Եվ Վաչիկը մտածեց, որ ինքը չէր ցանկանա դրանցից և ոչ մեկը լինել։

Նա մի կես ժամ դիմացավ, բայց հետո չհամբերեց և մոտեցավ Ռուբիկին։

— Ուրեմն ես «շատ վատ հիմա՞ր» եմ,— ասաց նա։

Ռուբիկը ոչինչ չպատասխանեց։ Վաչիկը նորից կրկնեց։ Այդ ժամանակ Ռուբիկը ասաց



— Ես քեզ հետ չեմ խոսում։

— Շատ պետքս է։ Դու միայն ասա, որ ես «շատ վատ հիմար» չեմ։

— Ո՛չ,— ասաց Ռուբիկը,— գուցե շատ վատ չէ, բայց էլի հիմար ես։

Վաչիկը այնքան բարկացավ, որ քիթը նույնիսկ մի փոքր կարմրեց։

— Հիմարը դո՛ւ ես,— ասաց նա,— և՛ ամենալավ հիմարը, և՛ ամենավատը։

— Լավ կլինի, որ լռես,— ասաց Ռուբիկը,— թե չէ գրքիդ վրա մի ամբողջ թանաքաման թանաք կլցնեմ։

Վաչիկը թեև ծույլ չէր, բայց աշխատասեր էլ չէր։

— Ավելի լավ,— ուրախացավ նա,— ես դասը չեմ սովորի և կասեմ, որ դու ես մեղավոր։

— Կարող ես չսովորել։ Ես մի գրքում կարդացել եմ, որ ծույլերի և անկարգների գլխին էշի ականջներ են բուսնում։

— Ուրեմն քո գլխին կբուսնեն,— ուրախացավ Վաչիկը։

— Այդ էր պակաս։ Քո՛ գլխին կբուսնեն։ Դու նույնիսկ կարգին կարդալ չգիտես։

— Դու ինձնից մեծ ես,— շարունակեց Վաչիկը,—



քո ականջները ավելի երկար կլինեն։

Նա պատկերացրեց, թե ինչպիսին կլիներ Ռուբիկը էշի ականջներով, և ծիծաղը եկավ։

— Մենք քեզ կենդանաբանական այգի կտանենք,— ասաց նա։

Ռուբիկը իսկապես բարկացավ։ Նա իրեն մտովի տեսավ կենդանաբանական այգում, այն էլ վանդակի մեջ և էշի ականջներով։ Նա վեր թռավ տեղից, բայց, չգիտես ինչու, չխփեց և հենց այդ դիրքով էլ մնաց կանգնած։ Եթե նա խփեր, Վաչիկը անպայման կպատասխաներ։ Բայց Ռուբիկը չխփեց, և դա շատ զարմանալի էր։ Վաչիկը այդպիսի դեպք չէր հիշում և զարմացած հեռացավ։

Հետո պատահեց ամենամեծ հրաշքը։ Դա միայն հայրիկը տեսավ, որ թերթ էր կարդում և երբեմն դիտում տղաներին։ Վաչիկը մոտեցավ Ռուբիկի մատիտը վերցնելու։ Նա վերցրեց և ոչինչ չպատահեց։

Դա ամենամեծ հրաշքն էր, որ երբևէ տեսել էր հայրիկը։ Իսկ հայրիկը տեսավ այդ հրաշքը։

# ՀԱՆԴԻՊՈՒՄ, ՈՐԸ ՏԵՂԻ ՉՈՒՆԵՑԱՎ

*ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ* (Գիտա-ֆանտաստիկ պատմվածք) *Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԴՅԱՆԻ*

*Դուք նորից ստիպում եք, որ պատմեմ իմ առաջին Թռիչքի մասին։ Ես վաղուց ձանձրացել եմ, իսկ դուք շարունակ պահանջում եք կրկնել նույն բանը։ Այդ Թռիչքի մասին մի մեծ գիրք եմ գրել։ Վերցրեք ու կարդացեք։ Գրքում լուսանկարներ էլ կան, որոնք շատ հետաքրքիր են։*

*Էլի համառում եք։ Այն ժամանակ ես էլ շատ համառ մարդ էի։ Եվ հիմա դուք ինձ դուր եք գալիս։ Լավ է, որ ժառանգել եք ձեր պապիկի բնավորության այդ գիծը։ Երբ մարդ համառ է ու պահանջկոտ, անպայման կհասնի իր նպատակին։ Խոսքս, իհարկե, դատարկ համառության ու լալկան պահանջկոտության մասին չէ։*

*Տեսնում եմ, ինձնից ձեռք չեք քաշելու։ Եթե այդքան ուզում եք, նորից կպատմեմ։*

*Շատ տարիներ առաջ, երբ երիտասարդ էի ու նոր էլ ավարտել էի Տիեզերագնացության ինստիտուտը, հանկարծ պարզվեց, որ Սիրիուսի Թեմիդա մոլորակը... դե, ի՞նչ եք այդպես զարմացած ինձ նայում։ Կարծես առաջին անգամն եք լսում, որ Թեմիդա մոլորակը երկրագնդի գիտնականների ուշադրությունը գրավեց տարօրինակ բռնկումներով։ Ենթադրեցին, որ Թեմիդայի բնակիչներն են ազդանշաններ տալիս, և անմիջապես որոշում ընդունվեց արագացնել Թռիչքը դեպի այդ զարմանալի մոլորակը։*

*Իհարկե, մտքովս էլ չէր անցնում, թե այդ ուղևորության երկու մասնակիցներից մեկը ես կլինեմ։ Իսկ ընկերս ավելի հին տիեզերագնաց էր։ Մի քանի անգամ մասնակցել էր լուսնային և մոլորակային արշավախմբերի աշխատանքներին։ Նրա հետ ծանոթացա Թռիչքից երկու ամիս առաջ, երբ սկսեցինք միասին անցկացնել հեռավոր ճանապարհորդության փորձաշրջանը։*

*Երբ պարապմունքներից հոգնած տուն էինք վերադառնում, նա մինչև ուշ գիշեր պատմում էր տիեզերքի և՞ աստղերի մասին։ Պատմում էր Լուսնի և մոլորակների վրա աշխատող մարդկանց մասին ու երբեք իմ կողմը չէր նայում։ Նայում էր դիմացի լուսամուտի մուգ-կապույտ ուղղանկյանը, հետևում էր աստղերին, որոնք դանդաղ սողում էին շրջանակի մի եզրից դեպի մյուսը։*

*Նա սիրում էր տիեզերքը։ Բա՛յց ավելի՝ սիրում էր կյանքը, մարդկանց. սիրում էր նաև այն մարդկանց, որոնց երբեք չէր հանդիպել, որոնք ապրում էին բոլորովին օտար, աստղերի պես հեռու աշխարհներում։*

*Փորձաշրջանը ավարտելուց հետո մենք հրաժեշտ տվեցինք երկրագնդին։ Կտրեցինք անցանք միլիարդավոր ու էլի միլիարդավոր կիլոմետրեր և բազմաթիվ տարիներ հետո վայրէջք կատարեցինք Թեմիդա մոլորակի վրա։*

*Մեր տիեզերանավը նստեց մի հարթավայրում, որն իմ ընկերոջ առաջարկով անվանեցինք Սիրիուսի սարահարթ։*

*Մեզ զարմացրեց Թեմիդացիների համառ անտարբերությունը։ Սարահարթն, իհարկե, անբնակ էր։ Գետինը՝ խանձված։ Բուսականության ոչ մի հետք չկար։*

*Չէ, հիմա պատկերացրեք, որ օտար աշխարհից ժամանած մի տիեզերանավ վայրէջք է կատարում Սահարա անապատում, որտեղ մի ժամանակ նույնպես բնակավայրեր չկային։ Չանցած մեկ-երկու ժամ, մարդիկ կգտնեին օտարականներին։ Իսկ մենք Թեմիդայի ժամանակով սպասեցինք մի ամբողջ օր, համբերությամբ սպասեցինք, բայց՝ անարդյունք։ Մոլորակի բնակիչները չէին կամենում որոնել ու գտնել մեզ։*

*Ընկերս առաջարկեց ամենագնաց մեքենայով հետախուզել շրջակայքը և, մի քանի օր անց, ըսկսվեցին մեր որոնումները։*

*Երբ ամենագնացը ցած սողաց սարահարթից, նկատեցինք ոլորապտույտ մի ժապավեն, որը ձգվում էր դեպի հեռուները։ Ճանապարհ էր։ Իսկ ճանապարհը մի որևէ բնակավայրի անպայման կհասնի։*

Տարօրինակ մոլորակ էր Թեմիդան։ Շրջապատում կենդանի շունչ չկար։ Երկնքից կախվել էին մուգ, չարագուշակ ամպերը։ Այդ ամպերը չէին լողում։ Կախվել էին երկնքից ու մեզ թվում էր, որ ամեն վայրկյան իրենց իսկ ծանրության տակ կպոկվեն, կընկնեն ցած և իրենցով կծածկեն ամբողջ մոլորակը։



Սիրիուսի ճառագայթները չէին թափանցում այդ ամպերի միջով։ Սիրիուսը չէր կարողանում իր կապտավուն լույսով ողողել Թեմիդա մոլորակը։ Եվ կարծես ամբողջ աշխարհը պարուրված լիներ գորշ, կեղտոտ ամպերի քուլաներով, կարծես ամբողջ աշխարհը թաղված լիներ իրիկնային անձրևախառն աղջամուղջում։

Շուտով սկսվեց մրրիկը։ Դուք երբեք չեք պատկերացնի, թե ինչպիսին է լինում մրրիկը մռայլ մոլորակում։ Մրրիկը այնտեղ նույնպես մռայլ է լինում։ Գիտե՞ք, թե դա ինչ է նշանակում։ Նշանակում է խանձված փոշու քուլաներ, որոնք գլորվում են մոլորակի մակերեսով. նշանակում է մտրակի կատաղի հարվածներ՝ ամենագնաց մեքենայի զրահին. նշանակում է աշխարհի վերջ։

Հիմա էլ չեմ հիշում, թե որքան ժամանակ ճամփորդեցինք ամենագնացով։ Վերջապես հեռու-հեռվում երևացին ինչ-որ շինություններ։ Գուցե միայն թվա՞ց... Շինությունները երևում էին հորիզոնում կուտակված ամպերի ֆոնի վրա։ Ընկերս ավելացրեց ամենագնացի արագությունը։ Իսկ մրրիկը սկսեց ավելի կատաղի մտրակել մեզ։ Թվում էր, թե նա կխորտակի ոչ միայն մեքենայի ամուր զրահը, այլև մեր զրահազգեստները։

«Չի կարող պատահել»— մրմնջաց ընկերս։

Իսկ կապտավուն աղջամուղջում ավելի որոշակի դարձան շինությունները։ Դրանք շինություններ չէին, այլ միայն կմախքներ, որոնք դեպի մուգ ամպերն էին ձգել իրենց մետաղյա ճանկերը։ Կյանքումս առաջին անգամ էի տեսնում ավերված քաղաք։

Ամենագնացի ղեկավարման վահանակի վրա վառվեց նարնջագույն լույսը, և միաժամանակ լսվեցին ռիթմիկ չրխկոցներ։

«Ռադիոակտիվ ճառագայթում» — ասացի ես, չնայած այդ մասին բարձրաձայն ասելու ոչ մի հարկ չկար։

Ընկերս ավելացրեց մեքենայի արագությունը։ Եվ ավերված քաղաքի արվարձանում ավտոմատ կերպով անջատվեց ամենագնացի շարժիչը։ Ռադիոակտիվ ճառագայթումը անչափ սաստկացել էր։

Կյանքի և մահվան շեմին կանգնած նայում էինք կործանված քաղաքին, նայում էինք մրի պես սև ամպերին, նայում էինք շինությունների կմախքներին, որոնք ամպերից էին կառչել իրենց մետաղյա ճանկերով։

«Ջերմամիջուկային պայթյուն»— կարճ ասաց ընկերս ու ետընթացի մեջ դրեց մեքենան։

...Այլևս չմնացինք ռադիոակտիվ ճառագայթում արտաշնչող մոլորակի վրա։

Եվ ո՛չ ես, ո՛չ էլ իմ ընկերը տիեզերքում կատարած հետագա ճանապարհորդությունների ժամանակ երբեք չհանդիպեցինք բնակեցված մոլորակների։ Դրանք անչափ քիչ են երևի։

Ուզում եմ ասել, որ բնությունը այնքան էլ առատաձեռն չէ մարդ ստեղծելու հարցում։ Ծիծաղո՞ւմ եք։ Երբ մեծանաք, դուրս գաք տիեզերք չափելու, գուցե դուք էլ հանդիպեք օտար աշխարհների բնակիչների։ Եթե չհանդիպեք, ոչինչ, չհուսահատվեք։ Կարևորն այն է, որ Երկրի վրա մարդիկ ապրում են։ Ի՞նչ է, կարծում եք մեզ մոտ ջերմամիջուկային զենքեր չե՞ն եղել։ Մարդիկ ժամանակին ոչնչացրել են դրանք։ Ես չեմ հուսահատվել, քանի որ եթե մի ուրիշ, հեռավոր աշխարհից հանկարծ այցելեն մեզ, ապա մեր հյուրերին երբեք չեն դիմավորի կործանված, կմախքացած քաղաքները։

Դե, եթե կարդայիք իմ գրած գիրքը՝ ավելին կիմանայիք։ Գրքում լուսանկարներ էլ կան։

Տեսաք, խոսքով ընկանք։ Իսկ ձեր քնելու ժամն արդեն անցել է։

Բարի գիշեր։

# ՊԱՐԱՊԵՔ ՀԱՍՏԱՏԱԿԱՄՈՐԵՆ, ՀԱՄԱՌ ԿԵՐՊՈՎ

ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ
(Շախմատի գծով աշխարհի չեմպիոն)

Երբ ես գրում եմ այս տողերը, դարձյալ մտաբերում եմ իմ անմոռանալի հանդիպումները հարազատ Հայաստանում, որ տեղի ունեցան վերջերըս, աշխարհի չեմպիոնի կոչման համար կայացած շախմատային մրցությունից հետո:

Հայաստանի բարեկամներիս շրջանում անցկացրած կարճատև հանգստից հետո, ինձ ծանր փորձություն վիճակվեց Լոս-Անջելոսի ութ ուժեղագույն գրոսմայստերների տուրնիրում: Ինչպես հայտնի է, ինձ ու գրոսմայստեր Պաուլ Կերեսին հաջողվեց համառ պայքարով այդ մրցությունից դուրս գալ որպես հաղթողներ, մենք բաժանեցինք առաջին և երկրորդ տեղերը:



Այս ամենը ես հիշեցի ոչ պատահականորեն: Այժմ ամենուրեք, հողագնդի բոլոր անկյուններում աճել է հետաքրքրությունը դեպի շախմատը: Շախմատ պետք է խաղալ մանուկ հասակից: Եթե ուզում ես լավ շախմատիստ դառնալ, պետք է պարապես մշտապես և շատ համառորեն: Բայց, իհարկե, դա չպետք է անել ի վնաս ուսման:

Խոր գիտելիքները պետք են ամեն մարդու, ինչ բնագավառում էլ նա աշխատելիս լինի, իսկ շախմատիստին՝ առանձնապես:

Պետք է մանկուց կոփել կամքը հաղթանակի նկատմամբ, զբաղվել ֆիզկուլտուրայով, լինել ուժեղ և առողջ:

Դրանց անհրաժեշտությունը ես խորապես զգացի այս տարվա գարնանը՝ Միխայիլ Բոտվիննիկի հետ ունեցած լարված մրցությունում:

Սկսվել է նոր ուսումնական տարին: Սովորեք հաստատակամորեն ու համառ կերպով և դուք կհասնեք ձեր նպատակին:




ԿԱՐԳԻՍ ՀՈԳՏԱՆՅԱՆ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

— Ես ճամբար եմ գնալու:

Ո՛չ մայրիկը, ո՛չ էլ հայրիկը հասկացավ, թե Արսենն ինչ է ուզում ասել: Հայրիկը շարունակեց թերթ կարդալ: Իսկ մայրիկը հենց ուզում էր խոհանոց գնալ...

— Մայրի՛կ, ես ճամբար եմ գնալու, վաղը չէ մյուս օր,— ասաց Արսենը՝ անհանգստացած ծնողների անտարբերությունից:

— Ու՞ր է այդ ճամբարը,— հարցրեց մայրիկը կանգ առնելով:

— Ծաղկաձորում:

Հայրիկը թերթն իջեցրեց դեմքից:

— Ու՞մ հետ ես գնալու,— ասաց նա:

— Մենակ... ես...

— Ինչպե՞ս...— ահաբեկվեց մայրիկը:

— Այո՛, դասընկերներիս հետ պիոներական ճամբար պիտի գնանք, քսան օրով... արձակուրդին հանգստանալու:

Հայրիկը թերթը ծալեց, դրեց սեղանին: Մայրիկը նստեց հայրիկի կողքին: Եվ նրանք լուռ նայեցին իրենց Արսենին: Անցավ մի պահ:

— Հարկավոր է քեզ հետ տանել անկողին, վերմակ, տաք հագուստ...— երկար լռությունից հետո ասաց հայրիկը.— ասում են Ծաղկաձորում ցուրտ է լինում:

— Մեր դաստիարակը՝ ընկեր Թադևոսյանը, չասաց, որ անկողին ու վերմակ վերցնենք մեզ հետ,— ասաց Արսենը:

Մայրիկը դեռ ահաբեկված էր: Նա չէր ուզում ասել, որ դա չափազանց տարօրինակ է իր համար, անսովոր: Չէր կասկածում, որ երեխաները լավ ժամանակ կանցկացնեն Ծաղկաձոր կոչված վայրում, որի մասին արտասահմանում հաճախ էր լսել Երևանի ռադիոկայանից: Բայց Արսենն առանց մայրիկի... մենակ... Նրան առավոտները զարթնեցնել է պետք, տասն անգամ ասել, որ նախաճաշի, քի՛չ խաղա փողոցում... առանց մայրիկի...

— Արսենի՛կ, ուզում ես անպայմա՞ն գնալ,— ասաց մայրիկը: Նրա ձայնը շատ թույլ հնչեց:

Իհարկե, ընկերներով պիտի գնանք:

Մայրիկն այլևս չխոսեց: Հայրիկն աչքով արեց Արսենին, որ դուրս գնա խաղալու: Արսենը չհասկացավ:

— Լավ, գնա խաղա բակում,— ասաց հայրիկը:

Արսենը ուրախ մի հայացք գցեց մայրիկի կողմը և գնաց:

— Ախր, ինչու՞ ես հուզվում, երեխայի սիրտը մի՛ կոտրիր,— ասաց հայրիկը մայրիկին:

— Չգիտեմ, մինչև այսօր իմ մոտից երբեք չեմ հեռացրել երեխային... սովոր չեմ... ինչ-որ երկյուղ պատեց ինձ,— թույլ խոսեց մայրիկը:

— Երեխային օդափոխության ենք ուղարկում իր ընկերների հետ, թող գնա, նրանց հետ լավ ժամանակ կանցկացնի:

— Ախր... ես կկարոտեմ...

* * *

Երբ մայրիկը պինդ-պինդ համբուրում էր Արսենին, աչքերից արցունք էր թափվում:

— Զմրսես, Արսենիկ,— ասաց մայրիկը:

Իսկ ավտոբուսը շարժվելու ժամանակ մայրիկի՝ արցունքով ողողված դեմքը ժպտում էր:

— Մայրիկ, նամակ կգրեմ...— վերջին բառերը ճախրեցին երեխաների ուրախ աղմուկի ու երգերի միջից:

Մայրիկը թաշկինակն էր շարժում: Արսենը դեռ շարունակում էր նայել հեռվում հետզհետե փոքրացող մայրիկին... և մեքենան շրջվեց խաչմերուկից. մայրիկը կորավ: Ինչ-որ անսովոր զգացմունքներ տիրեցին Արսենին... Արսենը մենակ էր... երեխաները ուրախ երգում էին...

— Արսե՛ն, դու էլ երգիր մեզ հետ,— չորս կողմից ասացին ընկերները:



— Նստի՛ր, նստի՛ր, կընկնես,— ասաց մեծ ու բարի աչքերով մի աղջիկ:

Հետո նա նորից շարունակեց երգելը: Արսենը չէր երգում:

Կողքին նստած տղան, որ չափազանց մուգ կարմիր, վզկապ էր կապել, նույնպես չէր երգում: Նա լուրջ և ինքնավստահ դեմք ուներ: Իսկ շուրթերը ուռցրել էր: Նա ուղիղ դիմացն էր նայում: Արսենը նույնպես նայեց տղայի նայած կողմը. ոչինչ չկար:

— Դու քանի՞ օրով ես հանգստանալու,— հանկարծ ասաց լուռ և ինքնավստահ տղան առանց Արսենին նայելու:

Աղմուկի մեջ Արսենը չհասկացավ նրան: Լուռ տղան թեքվեց Արսենի ականջին և նույն ուռցրած շուրթերով կրկնեց ասածը, այս անգամ ավելի բարձրաձայն:

— Քանի՞ օրով,— գոռաց Արսենը:

— Ես էլ քսան օրով եմ գնում: Ո՞ր ճամբարն ես գնում:

— Չգիտեմ, ընկեր Թադևոսյանի ճամբարը:

— Մենք բոլորս էլ ընկեր Թադևոսյանի հետ ենք գնում, վեցերորդ պիոներական ճամբարն է, ինչպե՞ս չգիտես:

Արսենը խիստ անհարմար զգաց: Կարմրատակեց...

Ըստ երևույթին, լուռ տղային դուր եկավ Արսենի շիկնելը:

— Անունդ ի՞նչ է,— հարցրեց նա:

— Արսեն:

— Իմ անունն էլ Գևորգ է, ինձ Գևիկ են ասում:

— Քո հայրը ի՞նչ գործ է անում:

— Գործարանում է աշխատում, բանվոր է:

— Իմ հայրիկն էլ բանվոր է: Իսկ ի՞նչ ենք անելու ճամբարում:

— Շատ բան, կգնանք կիմանաս... Դու առաջին անգա՞մ ես գնում:

— Այո՛:

— Ոչինչ, Արսեն, դու մի՛ մտածիր, գիտե՞ս, ես շատ ուժեղ եմ: Դու կլինես իմ ընկերը: Միասին կգնանք անտառ, ես ընկեր Թադևոսյանին կասեմ, որ մեր մահճակալները կողք-կողքի լինեն:



# ՄԻ ՏԱՐՈՎ ԷԼ ՀԱՍՈՒՆԱՑԱՔ...

*ՎԱՐՍԻԿ ԽՍԱՅԱՆ*

*(Վաստակավոր ուսուցչուհի)*

*Ահա և նորից հանդիպում ենք դպրոցի շեմքին, սիրելի երեխաներ։*

*Ամառային հանգստից «հոգնած»՝ մենք միասին կսկսենք մեր նոր ուսումնական տարին։ Ինչքա՜ն լայն հեռանկարներ են բացվում ձեր առջև այս տարի։ Մի տարով էլ հասունացած՝ դուք ավելի եռանդով կպարապեք, որպեսզի դպրոցական տարվա եզրափակիչ ամիսը՝ հունիսը, դիմավորեք պայծառ ժպիտով և ձեր ուժերի նկատմամբ ավելի մեծ հավատով։*

*Ի՞նչ կցանկանայի ես ձեզ այսօր. առողջություն, եռանդ, ազնիվ աշխատանքի կամք։*

*Ինձ թվում է, որ այս երեք պայմանները մեր հասարակության մեջ հեշտությամբ բաց կանեն «մեծ կյանքի» դռները ձեր առջև։*

*

Մի շաբաթ անց, Արսենը իրենց ճամբարի «Կարմիր անկյուն» վրանում նստած նամակ էր գրում մայրիկին։

Այնքա՜ն շատ բան ուներ ասելու։ Մտքերը խառնըվել էին իրար, սիրտը տրոփում էր, վախենում էր, որ չէր կարողանա ամեն ինչ ասել։ Դրսում երեխաները խաղում էին, իսկ նրան թվում էր, թե այդ պահին իր մոտ են նստած հայրիկը, մայրիկը, իր փոքրիկ քույրը՝ Սիրվարդիկը։ Ինչպե՞ս գրեր նրանց այն բոլորը, որ իր համար նորություն էին, հաճելի նորություններ...

Նա նորից կարդաց իր գրած նամակի սկիզբը. «Անուշ մայրիկ, նախ ասեմ, որ դու իզուր վախեցար, իսկ ես բոլորովին լաց չեղա ճանապարհին։ Ճամբար գալուց հետո էլ լաց չեղա։ Այստեղ չեն լալիս, ուրախանում են։ Մեզ տեղավորեցին վրանների տակ։ Այնքա՜ն հով է այստեղ։ Մենք մի մեծ ընտանիք ենք։ Հենց առաջին օրը ինձ ցույց տվեցին իմ մահճակալը, անկողինը ձյունի պես սպիտակ է։ Մահճակալիս կողքին փոքրիկ դարակ ունեմ։ Հագուստներս հանելիս վրան եմ դնում։ Իսկ դարակի տակ ազատ տեղ կա կոշիկներիս ու գուլպաներիս համար։ Ամեն առավոտ լվացվում եմ սառը ջրով, չեմ վախենում... Մազերս կտրեցի։ Այստեղ բոլորի մազերը խուզված են։ Երբ տնտեսն էի գնում, մազերս խանգարում էին... իսկ վարսավիրը ձրի է. ես հարցրի, թե ինչու՞, ընկերս՝ Գեվիկը, ասաց՝ չգիտեմ, այդպես է»։

Արսենը նորից կարդաց և դժգոհ մնաց։

Գևիկը նրան մոտեցավ։

— Դեռ չե՞ս վերջացրել. շուտ արա, անտառ ենք գնալու։

— Չի վերջանում էլի,— ասաց Արսենը։

— Ի՞նչ ես գրել, որ չի վերջանում,— ասաց Գեվիկը նայելով Արսենի գրածին։— Բա այսքան երկար նամակ կգրե՞ն...

— Հապա ինչպե՞ս...

— Կարճ... մի քանի խոսք։ Մայրիկները կարճ խոսքերից այնքան շատ բան են հասկանում, որ կարիք չկա էջեր լցնելու... ը՜...

— Ախր... ինչպե՞ս կարճ գրեմ։

— Տեսնեմ ի՞նչ ես գրել։

Գևիկը հենց կարդաց առաջին տողը, ասաց.

— Ա՜յ մարդ, ի՞նչ կարիք կա գրելու, որ լաց չես եղել։

— Լավ, այդ մեկը ջնջենք։

— Սպասիր,— ասաց Գևիկը և շարունակեց մըտքում կարդալ նամակը.— Էհ՜, մահճակալ, անկողին... ձեր տանն էլ սպիտակ անկողին կա. մայրիկի՞դ ես զարմացնում։ Ո՞վ չգիտի, որ ճամբարում այդ բոլորը կան։

— Ախր, ես մորս մոտից երբեք չեմ հեռացել։ Մեկ էլ, իմ մայրիկը չգիտի, թե ինչպես ենք ապրում ճամբարում։ Հապա էլ ի՞նչ գրեմ։

— Նստի՛ր,— ասաց Գևիկը։

Արսենը նստեց։

— Գրի՛ր։ Սիրելի մայրիկ։ Այստեղ օդը շատ լավ է։ Ախորժակս նույնպես շատ լավ է։ Կես կիլոգրամ ավելացել եմ։ Գրի՛ր...

Արսենը ծիծաղում էր։

— Ինչու՞ ես ծիծաղում։ Բա՞ս... պետք է գրեիր, որ կոշիկներդ հանելու տե՞ղ ունես և երեսդ էլ լվանու՞մ ես... գրի՛ր։

— Այդպիսի բաներ կգրե՞ս։

— Ե՛. դու չգիտես. մայրիկները հենց մեր շա-գանալուց են ուրախանում։

Բայց ես դեռ չեմ շաղացել։

— Երեսներդ կարմիր են. դա նշանակում է. որ պետք է սկսես շաղանալ։

Ձևացած Արսենը հավիվ էր զսպում ծիծաղը. բայց միաժամանակ տարակուսանքով նայում էր Գեւիկին. որն այդ պահին լուրջ էր ու հանդիսա-վոր։

— Ա՛յ. օրինակ... այս մեկը հրաշալի է գրված։

— Ո՞րը։

— Որ մենք այստեղ մի մե՜ծ ընտանիք ենք։ Ճիշտ է. այսքան տարի ճամբար եմ գալիս. դրա մասին չէի մտածել։

Արսենը ուրախացավ։ Բայց հանկարծ Գեւիկը դեմքը խոժոռեց։

— Լսի՛ր.— ասաց նա.— ինչու՞ ես գրել. որ ես եմ ասել՝ վարսավիրը ձրի է։

— Հապա՞...

— Ոչ մի բան գրել հարկավոր չէ։

— Էլ ի՞նչ գրեմ։

— Գրի՛ր՝ երեկոները խարույկի շուրջը պարում. երգում. նվագում ենք։

— Բայց ես ո՛չ պարում եմ. ո՛չ էլ նվագում։

— Դա կարևոր չէ։ Չէ՞ որ այդ բոլորը միասին ենք անում։ Ծուլով դու ինքդ էլ կպարես ու կեր-գես մեզ հետ։

Իսկ հետաքրքիր է. Գեւիկ. դու ի՞նչ ես գրում։

— Ես գրում եմ շատ կարճ։

— Ինչու՞։

— Հայրիկս ու մայրիկս ամեն կիրակի գալիս են այստեղ։ Հետո մենք նստում ենք գետակի մոտ. ծառերի ստվերում։ Երեկոյան նրանք գնում են։ Ահա քեզ նամակ.— ասաց Գեւիկը։

— Ես էլ չգրե՞մ. որ գան։

— Գրի՛ր. այդպես ավելի լավ կլինի. թող գան ամեն ինչ իրենց աչքով տեսնեն.— ասաց Գեւիկը և շուռ եկավ. սենյակից դուրս գալու համար. բայց կես ճանապարհին կանգ առավ։— Լսիր. ես մոռա-ցել էի. նամակդ երեկոյան կվերջացնես. հիմա ան-տառ ենք գնում. շու՛տ. շտապի՛ր.

Երկու ընկերները վազելով հասան. միացան շարքին։ Բոլորը երգում էին ծանոթ մի երգ։ Ար-սենն էլ չկարողացավ լուռ մնալ. և նրա ձայնն էլ խառնվեց բոլորի ձայնին։

# Հանդիպում Պատմության հետ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Արահետնե՛ր, արահետնե՛ր,
Գալիս, կորչում խորն անտառում,
Լեռնալանջով ձգվում են վեր,
Ո՞վ գիտե, թե ուր են տանում։
Հասան ջրկատն ավեր վանքին,
Նայում են ու չեն հավատում.
Քանդակել են լեռն ահագին.
— Ո՞վ է ապրում այս պալատում.
— Պատմությո՜ւնը պատմությո՜ւնը.
Անցած դարերն ամեն խորշում,
Նայում է քեզ հսկա սյունը,
Վրան գրեր կորած փոշում...
Աշակերտնե՛ր, աշակերտնե՛ր,
Գիրքն այս քարե պիտի կարդաք,
Մեր պապերի ձեռքն է կերտել
Խոյակները զարդաքանդակ։
Ի՜նչ նախշեր կան մամռոտ քարին,
Քարին՝ գրեր մեսրոպատառ,
Արոր ու սուր, քնար ու վին,
Պիտի կարդալ, պիտի կարդալ...
Եվ արևի ժամացույցն է
Քանդակած այս մռայլ պատին։
Ամեն մի գիծ ուղեցույց է,
Ամեն մի տառ՝ մի խոսք, մի թիվ...
Մաշտոցն է իր աչքով տեսել,
Մտել պալատն այս քարակուռ,
Մեր լեռները ոտքով հասել,
Դպրոց բացել հայոց վանքում։
Եվ թվում է... Մաշտոցն ահա
Պիտի ելնի մռայլ վանքից
Ու ողջունի մեզ հայրաբար,
Մի երգ կարդա մեր նոր գրքից։—
Ուսուցիչն է պատմում հուզված,
Ջրկատն անձայն շուրջն է նայում,
Մեր նոր դարով լուսավորված
Պատմությունն է կենդանանում։



# ԹԵ ԻՆՉՈՒ ՊԵՏՔ Է ԽՈՍՔԻ ՏԵՐ ԼԻՆԵԼ

ԱՄԱԼՅԱ ՂԱՐԴԱՍՅԱՆ

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Միջջոկատային մրցություն է. հանդես են գալիս ջոկատների ինքնագործ խմբերը: Երկրորդ ջոկատը պատրաստվել է ներկայանալ խմբային պարերով: Պիոներները շատ բանով են պարտական Պետիկին: Չէ՞ որ Պետիկը հրաշալի ակորդեոն է նվագում: Չլիներ այդ շնորհալի տղան, երկրորդ ջոկատը հազիվ թե համարձակվեր բեմ բարձրանալ ամբողջ դպրոցի առաջ: Բայց այս ի՞նչ բան է. բոլորը հավաքվել են, դպրոցի դահլիճը լիք-լեցուն է հանդիսատեսներով, շուտով կբացեն վարագույրը, իսկ Պետիկը դեռ չկա: Ընկերներն անհանգստանում են, հուզվում:

— Իսկ եթե չգա՞, իսկ եթե մոռանա՞ իր խոստումը:

— Ի՞նչ կանենք մենք: Ախր նա ինչո՞ւ պետք է անհանգստանա ուրիշների պատվի համար: Ո՛չ իր դպրոցն է, ո՛չ էլ իր ջոկատը,— հուսահատ խոսում էին երկրորդ ջոկատի պիոներները:

— Ընկերնե՛ր, մի՛ հուսահատվեք, Պետիկն իր խոսքի տերն է, չի կարող պատահել, որ չգա,— համոզված ասաց Զավենը:

Եվ բոլորը խաղաղվեցին, հանգստացան: Հանգստացան այնպես, կարծես Պետիկն արդեն եկավ և իրենց ջոկատի պատիվն էլ փրկվեց:

Շատ հաճելի է, երբ բոլորն այդպես հավատում են իրենց ընկերոջը:

Բայց եկեք միասին քննենք, սիրելի ընթերցողներ, թե ինչը այդպես վստահություն ներշնչեց Զավենի ընկերներին:

Արդյո՞ք գաղտնիքը միայն այդ խոսքի իմաստի մեջ էր կամ այդ խոսքն արտասանելու հաստատուն, վստահ տոնի՞ մեջ:

Ես չեմ ժխտում ո՛չ առաջինը, ո՛չ էլ երկրորդը. երկուսն էլ մեծ նշանակություն ունեն: Այդպիսի պահին նման համոզիչ խոսքերը քիչ նշանակություն չէին ունենա: Բայց կարծում եմ, որ ընկերներին վստահություն ներշնչելու մեջ մեծ դեր ունի նաև այն, թե ով է այդ խոսքն արտասանում:

Ընկերները ճանաչում են Զավենին, գիտեն, որ Զավենը ազնիվ է, ճշմարտախոս. լրջորեն է դատում ամեն մի երևույթ, կարողանում է ճիշտ ճանաչել ու գնահատել իր դիմացինին: Իսկ եթե այդ լրջախոհ պատանին այդպես վստահորեն արտահայտվեց Պետիկի մասին, նշանակում է պետք է հավատալ:

Իսկ եթե այդ խոսքն ասեր ոչ թե Զավենը, այլ մեկ ուրիշը, ասենք, Սուրիկը, որը վստահություն չի վայելում իր ընկերների մեջ, և ասեր ոչ թե Զավենի պես՝ եզրակացնելով Պետիկի բնավորությունից, այլ իր խոսքը հաստատեր համոզիչ փաստերով: Ասենք, նա հայտներ, թե մի տասը րոպե առաջ տեսել է Պետիկին և խոսել նրա հետ:

Արդյոք նրան կհաջողվե՞ր հանգստացնել հուզված, իրար անցած ընկերներին: Արդյոք ընկերները չէի՞ն հիշի այլ և այլ դեպքեր, երբ Սուրիկը համոզված պնդել է ինչ-ինչ հարցերում և հաճախ հակառակն է ստացվել:

Ես կարծում եմ, որ ընկերները ինչ-որ չափով կհավատային Սուրիկին: Չէ՞ որ նրանք շատ էին ուզում, որ Պետիկը անպայման գա: Բայց չե՞ք



կարծում, որ նրանք այնպես չէին հանգստանա, ինչպես Զավենի խոսքից հետո: Նրանց հոգում մի անհանգիստ երկյուղ կմնար մինչև Պետիկի գալը: Հետևաբար ճիշտ է ու կարևոր, թե ով ասաց. «Պետիկն իր խոսքի տերն է, նա կգա»:

Չէ՞ որ Զավենն էլ իր խոսքի տերն է, եթե նա համոզված չլիներ, չէր ասի այդ բանը: Իսկ եթե Պետիկը ընդհանրապես խոսքի տեր չլիներ, ի՞նչ կմտածեին նրա ընկերները: Դեռ մի կողմ թողնենք, թե որքան հուզմունք ու անհանգստություն կապրեին նրանք, և մտածենք, թե արդյո՞ք նույն

հարգանքով ու ակնածանքով կլցվեին Պետիկի նկատմամբ։ Նույնիսկ նրա գալուց հետո։ Ո՛չ, հաստատապես ոչ։ Ընկերները Պետիկի գալուց հետո միայն կուրախանային, որ իրենց հանդեսը չի ձախողվի։ Նրանց համար Պետիկը սիրելի կլիներ միայն այդ պահին։ Նրանց մեջ երբեք հարգանք ու ակնածանք չէր առաջանա Պետիկի նկատմամբ։ Եվ ոչ որ նրա մասին համոզված չէր ասի. «Պետիկն իր խոսքի տերն է, նա կգա»։

Կարծում եմ, չեք առարկի, եթե ասեմ, որ կյանքում մարդու արժանիքներից ավելի կարևորը կամ գուցե և ամենակարևորը հենց դա է. թե նա ինչպիսի վերաբերմունք է ստանում իր շրջապատի և ընկերների կողմից։ Իսկ շրջապատը այդ հարգանքը մատուցում է միանգամայն անաչառ կերպով գնահատելով մարդու արժանիքները։

Վերջին հաշվով ի՞նչ է նշանակում խոսքի տեր լինել։ Կամ հակառակը՝ ի՞նչ է նշանակում խոսքի տեր չլինել։ Երբ որևէ մեկի մասին ասում են՝ նա



իր խոսքի տերը չէ, այդ միևնույն չէ՞, եթե ասեն՝ նա ստախոս է։ Այո՛, գրեթե միևնույնն է։ Առաջինը մի քիչ մեղմ է ասված, երկրորդը՝ մի քիչ խիստ։

Ա՛յ, ես ձեզ կպատմեմ մի դեպք Լիլիթի մասին։

Լիլիթը իմ փոքրիկ հարևանուհին է, նա սովորում է երկրորդ դասարանում։ Եվ վատ չի սովորում, ավելին՝ գերազանցիկ է։ Բայց արի ու տես, որ մայրիկը շատ դժգոհ է նրանից։ Լիլիթի հայրիկն ու մայրիկը աշխատում են, Լիլիթը դասերից հետո տանը մենակ է մնում մինչև նրանց վերադարձը։ Ամեն օր մայրիկը զգուշացնում է նրան. «Նախ կուտես, մի փոքր կհանգստանաս, կպատրաստես բոլոր դասերդ և ապա կխաղաս»։ Լիլիթը խոստանում է։ Նա երբեք մայրիկին չի առարկում, միշտ խոստանում է կատարել նրա պատվերները։ Խոստանալը խոստանում է, բայց թե ինչպե՞ս է կատարում, այ դա է կարևորը։ Մայրիկը վերադառնում է աշխատանքից։

— Լիլի՛թ, պատրաստե՞լ ես դասերդ։

— Այո՛։

— Բոլո՞րը։

— Մայրիկ ջան, մնում է միայն թվաբանությունը։

— Ռուսաց լեզվի դասը պատրաստե՞լ ես, Լիլի՛թ։

— Վա՜յ, մայրիկ ջան, մոռացել եմ։

— Դաշնամուրի դասը պատրաստե՞լ ես։

— Հիմա՛, մայրիկ ջան, հիմա՛ ամեն ինչ կանեմ։

— Իսկ ի՞նչ ես արել մինչև հիմա։

Լիլիթը այստեղ լռում է, պարզ է՝ խաղացել է։ Նա, իհարկե, մի քանի անգամ զգուշացնելուց հետո, ի վերջո պատրաստում է բոլոր դասերը։ Բայց եթե ոչ հաջորդ օրը, ապա մեկ կամ երկու օրից հետո անպայման կրկնվում է նույն պատմությունը։ Հիմա ոմանք կասեն՝ է՛հ, ի՞նչ կա որ, չէ՞ որ վերջ ի վերջո նա պատրաստում է իր դասերը և գերազանցիկ է։

Բայց այդպես չի մտածում Լիլիթի մայրիկը։ Նրան անհանգստացնում է այն միտքը, որ Լիլիթը խոստանում է և իր խոսքի տերը չի լինում։ Նա մի անգամ ինձ ասաց, որ վախենում է՝ Լիլիթը սկսի սուտ խոսել։ Եվ չսխալվեց։

Վերջերս Լիլիթը պետք է ելույթ ունենար դպրոցական օլիմպիադայում։ Ինքնագործ խմբի ղեկավարը նրա խնդրանքով գրել էր անգլերենի ուսուցչուհուն, որ սա հաջորդ օրը Լիլիթից չպահանջի տնային աշխատանքը, որպեսզի Լիլիթը հնարավորություն ունենա այդ օրը ամբողջությամբ տրամադրելու օլիմպիադայի փորձերին։ Երբ մայրը հարցրեց Լիլիթին, թե ինչ տնային հանձնարարություններ ունի, նա անմիջապես վրա տվեց.

— Անգլերենից ոչինչ չի տվել. վաղը ռուսերեն չունենք, հայերենը մի փոքր անգիր էր, դպրոցում եմ սովորել։

— Ասում ես, անգլերենից ոչինչ չեն հանձնարարե՞լ։

— Ո՛չ,— ասաց Լիլիթը։

Մայրն այդ օրը հանդիպել էր անգլերենի ուսուցչուհուն և ամեն ինչին տեղյակ էր։ Մայրիկը շատ վրդովվեց։ Մի քանի օր միայն դրա մասին էր մտածում։ Չէ՞ որ մշակվում էր Լիլիթի բնավորությունը։ Նա մտածում էր ավելի հեռուն, ապագայի մասին։ Եթե դա Լիլիթի մոտ բնավորություն դառնա, ի՞նչ է սպասում նրան վաղը։

Երկար չի տևի, և այդ բանը կնկատեն նրա ընկերները, ուսուցիչները, կդադարեն նրան հար-

Գնլով. չեն հավատա նրա ոչ մի խոսքին։ Իսկ դա սարսափելի է։

— Ես մի դպրոցական ընկեր ունեի,— ասաց նրա մայրը,— որը նույնպես հաճախ էր բռնվում ստախոսության մեջ։ Նա այժմ մի քանի երեխաների հայր է, բայց հիմա էլ, երբ ես հանդիպում եմ նրան և նա թեկուզ շատ սովորական, առօրյա մի դեպք է պատմում, ես մտքիս մեջ միշտ զտում եմ նրա ասածները, գիտեմ, որ մեծ մասը հնարովի է։ Առաջ միշտ ծաղրում էի նրան, մեզ պատմած «փիչերու» համար, նշում, թե ասածներից որին եմ հավատում, որին՝ չէ։ Բայց, ըստ երևույթին, ստախոսությունը նրա ուղն ու ծուծն էր կազմում և հնարավոր չէր արմատախիլ անել նրա միջից։ Իսկ հիմա այլևս ուշ է, մարդիկ սովորել են նրա նկատմամբ թերահավատ լինել, չեն հարգում նրան, և ինքն էլ սովորել է իր նկատմամբ միշտ թերահավատ վերաբերմունք տեսնել։ Եվ ապրում է այդպես, ողորմելի, արժանապատվությունից զուրկ, խղճուկ վիճակում։ Խոսքի կեսից արդեն փոխվում է նրա ձայնը, դառնում երկչոտ, վախենում է նայել զրուցակցի աչքերի մեջ, անմիջապես զգում է, որ խոսակիցը չի հավատում իրեն։ Բայց որովհետև այլևս չի կարող ետ կանգնել իր բռնած ճանապարհից, հենց այդպես երկչոտ ձայնով էլ, զգուշի նայելով զրուցակցին, ավարտում է իր միտքը՝ համոզված, որ չեն հավատում իրեն։

Լիլիթն, իհարկե, շատ հեռու է այդ վիճակին հասնելուց, բայց եթե ժամանակին չպայքարեն նրա այդ բնավորության դեմ, ով գիտի։

Ես, իհարկե, հանգստացրի Լիլիթի մայրիկին, բայց մտածում եմ, թե որքա՞ն իրավացի է նա, երբ գտնում է, որ պետք է սկզբից պայքարել ստախոսության և անպարտաճանաչության դեմ։ Շատ հաճախ մենք անտեսում ենք դրանք, ծիծաղում և դատարկ բան համարելով, անհոգ հեռանում։ Մինչդեռ դա ամրանում է մարդու մեջ և դառնում բնավորություն։

Անպարտաճանաչություն նկատեցիք ընկերոջդ, բարեկամիդ, հարազատիդ մոտ, խարազանի՛ր, ծաղրի՛ր, հիշի՛ր, որ վատը դրանից ավելի մեծ չարիք է ծնվելու։ Հարգի՛ր տված խոսքդ, որ մարդիկ էլ հարգեն քեզ։

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

ԴԱՈՒԽ ԽՆՆԵՐՈՐԴ

Բանանիտոն, զինված վրձիններով, կտավով և ոգևորությամբ, վաղ առավոտյան դուրս եկավ տանից։ Նա կամենում էր որքան կարելի է շուտ ցույց տալ իր վարպետությունը։ Ջելսոմինոն դեռ քնած էր, իսկ Կաղիկ-կատուն գնաց նկարչին ուղեկցելու և ճանապարհին նրան մի քանի լավ խորհուրդ տվեց.

— Ծաղիկներ նկարիր ու վաճառիր։ Ես համոզված եմ, որ դու տուն կգնաս կեղծ դրամի մի մեծ կույտով, մի բան, որ այնքա՜ն անհրաժեշտ է այս արտասովոր երկրում։ Նկարիր, օրինակ, այնպիսի ծաղիկներ, որոնք այս ամսին դեռ չեն բացվել. եղանակին համապատասխան ծաղիկներ մարդիկ կարող են գնել նաև ծաղկավաճառուհիներից։ Էլի մի խորհուրդ՝ մկներ չնկարես, թե չէ կանայք սարսափելի կվախենան։ Սա ես ասում եմ քո օգտի համար, թե չէ ինձ համար ի՞նչ կա, մկները ինձ ծանոթ են։

Բանանիտոյից բաժանվելով, Կաղիկ-կատուն գնեց օրվա թերթը, մտածելով, որ Ջելսոմինոյին հաճելի կլինի իմանալ, թե իր համերգի մասին ինչ են գրում այնտեղ։ Թերթը կոչվում էր «Օրինակելի խաբեբա» և, հասկանալի է, լի էր կեղծ փաստերով ու իրադարձություններով։

Թերթում, օրինակ, մի թղթակցություն կար «Վազորդ Պերսիկետտ խոշոր հաղթանակը» վերնագրով։ Ահա այդ հաղորդման տեքստը.

«Պարկավազքի նշանավոր չեմպիոն Ֆրանկո Պերսիկետին երեկ թագավորության շուրջը արշավելու ասաներորդ փուլում հաղթանակի համար՝ քսան րոպե առաջ անցնելով Ռոմոլո Բարտոլոյից, որը երկրորդ տեղը գրավեց և երեսուներեք րոպե տասներեք վայրկյան առաջ անցավ երրորդ տեղը գրաված Պյերրո Կլեմենտինուց։ Հաղթանակից մեկ ժամ հետո տեղ հասած վազորդների խմբում, ֆինիշի մոտ առաջ նետվեց Պասկուալինո Բալդինելլին»։

«Իսկ ի՞նչ տարօրինակ բան կա այստեղ,— կհարցնեք դուք։— Պարկերով վազքը նույնպիսի սպորտային մրցություն է, ինչպես սպորտի մյուս տեսակները։ Պարկավազքը տեսնելը նույնիսկ ավելի

Սկիզբը՝ նախորդ համարում։

հետաքրքիր է. բան, ասենք, մոտովազքն ու ավտովազքը։ Համաձայն եմ, բայց «Օրինակելի խաբեբա» թերթի ընթերցողները հիանալի գիտեին, որ պարկերով վազք երբևէ տեղի չի ունեցել և Ֆլավիո Գերսիկետին, Ռոմոլո Բարոնին, Պյերրո Կլեմենտինին, Պասկուալինո Բալզիմելին և վազողների խումբը իրենց կյանքում երբեք պարկի մեջ չեն մտել և իսկի չեն էլ երազել իրարից առաջ անցնելու կամ ֆինիշի մոտ առաջ նետվելու մասին։

Ահա թե սովորաբար բանն ինչպես էր լինում։ Յուրաքանչյուր տարի թերթը պարկավազք էր կազմակերպում, որին ոչ ոք երբեք չէր մասնակցում։ Որոշ փառասերներ ցանկանալով իրենց անունը տեսնել թերթերում, մրցավազքին իրենց մասնակցության համար վճարում էին և ամեն օր որոշ գումար էին մուծում, որպեսզի հաղթող դուրս գան։ Ով որ շատ էր վճարում, նա էլ հռչակվում էր հաղթող։ Թերթը բառեր չէր խնայում նրան փառաբանելու համար, մերթ «հերոս», մերթ «բարձր կարգի վազորդ» և այլ ածականներ տալով։ Հաղթանակը ուղղակի կախում ուներ դրամական վճարումներից։ Այն օրերը, երբ մուծումներն աննշան էին լինում, թերթը վրեժ էր լուծում մասնակիցներից, գրելով, թե թիմը բուն է մտել ճանապարհին, իսկ առաջնակարգ վազողներն ու շարքային սպորտսմենները գլուխ են պահում։ Դա խայտառակություն է, և չեմպիոններ Գերսիկետին ու Բարոնին պետք է հաջորդ փուլում ավելի մեծ եռանդ ցույց տան, եթե չեն ուզում հանդիսատեսի համակրանքը կորցնել։

Սինյոր Գերսիկետին խմորեղենի ֆաբրիկայի տերն էր և իր անունը թերթում տպագրելով, նա իր անուշահացերի համար լավ ռեկլամ էր ունենում։

Քանի որ Գերսիկետին շատ հարուստ էր, միշտ կարողանում էր մյուսներից առաջ ընկնել և առաջինը տեղ հասնել։ Մրցության ավարտակետում նրան «համբուրում էին ու պատիվ տալիս», իսկ գիշերները ցավաքաշները նրա պատուհանների տակ սերենադներ էին երգում։ Այդպես գրում էր թերթը։ Հարկ չկա ասելու, որ ցավաքաշները, որոնք նույնիսկ թմբուկ խփել չգիտեին, այդ ժամանակ իրենց անկողիններում պառկած հանգիստ խռմփացնում էին։

Այդ նույն էջում Կաղլիկ-կատուն էլի մի վերնագիր կարդաց. «Կորնելիայի փողոցում ոչ մի աղետ տեղի չունեցավ. հինգ հոգի չզոհվեցին և տասը ուրիշներ ոչ մի բերծվածք չստացան»։

Թղթակցության մեջ ասվում էր. «Երեկ Կորնելիա փողոցի տասներորդ կիլոմետրի վրա երկու ավտոմեքենա, որոնք մեծ արագությամբ գնում էին տարբեր ուղղությամբ, բոլորովին էլ չընդհարվեցին։ Տեղի չունեցած ընդհարման ժամանակ հինգ հոգի չզոհվեցին, մյուս տասը ոչ մի վերք չստացան. դրա համար էլ նրանց հիվանդանոց տեղափոխելու հարկ չեղավ»։ Ցավոք սրտի, սա հնարովի բան չէր, այլ թարս ու շիտակ մի հաղորդում, որի մեջ ցույց էր տված ճիշտ հակառակը այն բանի, ինչ տեղի էր ունեցել իրականում։



Նույն ձևով էր հաղորդվում նաև Ջելսոմինոյի համերգի մասին։ Թղթակցության մեջ, օրինակ, գրված էր, որ «նշանավոր տենորը համերգի սկզբից մինչև վերջ լուռ էր»։ Թերթում տպագրված էր նաև ավերված թատրոնի լուսանկարը, որի տակ գրված էր. «Ինչպես կարող է ընթերցողը տեսնել իր սեփական աչքերով, թատրոնին որոշակիորեն ոչինչ չի պատահել»։

Հետո Կաղլիկ-կատուն մի հերթում կարդաց, որը նույնպես վերաբերում էր Ջելսոմինոյին։

«Բոլորովին իրականությանը չի համապատասխանում, թե իբր ոստիկանությունը փնտրում է նշանավոր տենոր Ջելսոմինոյին։ Դրա համար ոչ մի պատճառ չկա, որովհետև Ջելսոմինոն բոլորովին էլ պարտավոր չէ պատասխան տալ քաղաքային այգուն իր պատճառած վնասների համար։ Դրա համար էլ, ով որ իմանա, թե որտեղ է թաքնվում Ջելսոմինոն, թող այդ մասին չհայտնի ոստիկանությանը, թե չէ խստորեն կպատժվի»։

«Գործը բարդանում է,— մտածեց Կաղլիկ-կատուն,— հարկավոր է այս մասին շտապ հայտնել Ջելսոմինոյին»։

Հենց այդ ժամանակ էլ նա լսեց իրեն այնքան ծանոթ ձայնը։ Ջելսոմինոն երգում էր իր հայրենի գյուղի այն հայտնի երգերից մեկը, որոնք նրան այնքան վիշտ պատճառեցին։

«Այս անգամ ես գրազ կգամ իմ չորս թաթերի վրա, նորն էլ հետը հաշված, իհարկե, որ Ջելսոմինոն քնած է և երգում է երազում։ Եթե ես չշտապեմ, պահնորդները ինձանից առաջ կընկնեն»։

Տան մոտ նա ունկնդիրների մի մեծ բազմություն տեսավ։ Ոչ ոք տեղից չէր շարժվում, ոչ ոք չէր խոսում։ Եվ նույնիսկ, երբ մեկ-մեկ ջարդվում էին հարևան տների ապակիները, ո՛չ ոք չէր բողոքում։ Թվում էր, թե հրաշալի երգը բոլորին կախարդել է։ Կաղլիկ-կատուն բազմության մեջ երկու երիտասարդ պահնորդ նկատեց, որոնց դեմքերին էլ նույն հիացմունքը կար, ինչ մյուսների մոտ կար։ Դուք արդեն գիտեք, որ պահնորդներին հրամայված էր Ջելսոմինոյին բանտարկել, բայց այս երկուսի մոտ կարծես թե այդպիսի մտադրություն չկար։ Դժբախտաբար այդ ժամանակ պահնորդների մի ջոկատ էլ էր մոտենում տանը։ Նրանց պետը մտրակով իր համար ճանապարհ էր բացում բազմության մեջ, նա երևի մի քիչ խուլ էր, դրա համար էլ Ջելսոմինոյի երգեցողությունը նրան չէր հասնում։

Կաղլիկ-կատուն աստիճաններով արագ վազեց վեր և գնդակի նման նետվեց ձեղնահարկ։

— Վե՛ր կաց, վե՛ր կաց, շո՛ւտ,— գոռգոռաց նա և պոչով խուտուտ տվեց Ջելսոմինոյի քիթը։— Համերգը վերջացած է, ոստիկանությունն է գալիս։

Ջելսոմինոն աչքերը բաց անելով ու տրորելով, հարցրեց.

— Որտե՞ղ եմ ես։

— Կարող եմ ասել, թե դու որտեղ կընկնես, եթե անմիջապես այստեղից չփախչենք — բանտում։

— Ի՞նչ է, էլի երգո՞ւմ էի։

— Գնա՛նք, փախչենք կտուրներով։

— Դու կատվի նման ես դատում։ Ես սովոր չեմ կղմինդրների վրայով թռչկոտել։

— Դու կբռնես իմ պոչից։

— Իսկ ո՞ւր գնանք։

— Բոլոր դեպքերում, ինչքան այստեղից հեռու, այնքան լավ։ Դե մի որևէ տեղ կհասնենք է՛լի։

Կաղլիկ-կատուն առաջինը թռավ ձեղնահարկի պատուհանին և Ջելսոմինոյին ուրիշ բան չէր մնում, քան աչքերը փակել, որպեսզի գլուխը չպտտվի, և հետևել նրան։

(Շարունակելի)



# ԾՈՒՅԼԻ բերքահավաքը

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

— Տուն արի շուտ, ա՛յ Արմենակ,—
Կանչում է մայրը շարունակ,—
Ջուր մի՛ վատնիր ամբողջ օրդ,
Դեռ չես արել գրավորդ...

— Ի՞նչ գրավոր ու ի՞նչ դասեր,
Տարին դեռ նոր է սկսվել,—
Ձայն է տալիս դրսից տղան,—
Ձեք էլ թողնում մի քիչ խաղամ...









Խելքը տված նոր գնդակին,
Ծլկում է նա հանկարծ բակից
Ու, երբ արդեն օրն է մթնում,
Սաստիկ հոգնած տուն է մտնում։

Տատիկը թե՝ վա՜յ, սոված է,
Մայրիկը թե՝ պատժվա՛ծ է,
Շուտով կգա ժամի տասը,
Չի սովորել դեռ իր դասը...

— Դե պատժվի՛ր, տեղն է դա քեզ,—
Դառնում է տատն Արմենակին,—
Քանի՛ անգամ ասել եմ ես,
Գործդ արա ժամանակին։

Ժամանակը ծի չէ, տղա՛ս,
Որ կանգնեցնես՝ երբ ուզենաս,
Հենց որ գարնան օրերն անցան,
Էլ չի՛ լինի գարնանացան։



Սեպտեմբերն էլ քո գարունն է,
Քո արտերն էլ գրքերում են,
Գործդ մի՛ թող կիսատ-պռատ,
Որ քո բերքն էլ լինի առատ...

Խոսքեր հո չե՞ն, այլ՝ գոհարներ,
Բայց Արմենին դուր չեն գալիս,
Մի ականջով մտնում են ներս,
Իսկ մյուսով դուրս են գալիս։

Եվ օրերն են անցնում արագ,
Հոկտեմբերն է կանգնում շեմքին,
Կոլխոզնիկն իր բերքը առատ
Տուն է տանում՝ երգը շուրթին։





Մրջյուններն էլ, տե՛ս, շարեշար,
Կուտակում են ձմռան պաշար։
Միայն... արտը խեղճ Արմենի
Կարկտահար ասես լինի...












Պայուսակը շալակն առած,
Քայլում է նա տխուր-տրտում
Ու գիտության դաշտից առատ
«Երկուսներ» է լոկ բերում տուն։

— Բանդ բուրդ է, ա՛յ Արմենակ,—
Տղաներն են ասում թաղի,—
Շուտով կգա բերքահավաք,
Ու ոչ մի հասկ դու չես քաղի...

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

# ԱՂՋԻԿԸ ԵՎ ԿԱՊՈՒՅՏ ԱՉՔԵՐՈՎ ԱՅՆ ՏՂԱՆ



ԿԱՐԼԵՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Մայրը նրան ամեն առավոտ պատվիրում էր.

— Դու խելոք խաղա այստեղ, ես խոհանոցում ճաշ պատրաստեմ:

Աղջիկը բարձրանում էր պատուհանի գոգին և, քիթը հպելով ապակուն, նայում էր դուրս: Աղջիկը կարող էր չանել այդ, կարող էր չբարձրանալ պատուհանի գոգին, բայց այդ դեպքում մայրը կասեր, որ իր խոսքը նշանակություն չունի նրա համար, իսկ հետո էլ կապույտ աչքերով այն տղային նա չէր տեսնի: Դրա համար էլ միշտ պատասխանում էր.

— Լա՛վ, մամա, շատ լավ:

Այդ օրն էլ բարձրացավ պատուհանի գոգին և, քիթը հպելով ապակուն, նայեց դուրս:

Ընդարձակ բակում աշնան թույլ անձրևն էր և մեկ էլ՝ կապույտ աչքերով այն տղան: Տղան ոտքերի արանքում գնդակ ուներ, իսկ քիթը տափակ էր: Աղջիկը ուզեց ձեռքով անել: Այդ պահին տղան ճարպիկ շարժումով գնդակը օդ բարձրացրեց: Դիմացի մուտքից բակ դուրս եկան երկու ուրիշ տղաներ, իսկ քիչ անց՝ շեկ մազերով Կարինեն: Մայրը շտապեց Կարինեի հետևից և, նրա ձեռքը բռնելով, ուզեց բակից դուրս գալ:

Կարինեն կանգնեց, նայեց պատուհանին, ժպտաց և ձեռքով արեց: Աղջիկը ծիծաղեց, ինքն էլ ձեռքով արեց: Նա կարող էր ձեռքով չանել, բայց որովհետև ձեռքով անելիս ժպտում են, դրա համար էլ նա ձեռքը թափահարեց: Աղջիկն ուզեց իջնել բակ, բայց հիշեց, որ մայրն ամեն առավոտ պատվիրում էր.

— Դու խելոք խաղա այստեղ, ես խոհանոցում ճաշ պատրաստեմ:

Աղջիկը չիջավ բակ: Նա հանկարծ նորից ուզեց տեսնել կապույտ աչքերով այն տղային: Տղան մայկայով էր և բոլորից էլ ճարպիկ էր խաղում: Գնդակը շնչահեղձ արագությամբ թռչում էր այս ու այն կողմ:

Աղջիկը նորից ձեռքով արեց, այս անգամ կապույտ աչքերով այն տղային: Տղան ժպտաց: Նա էլ ձեռքով արեց: Աղջիկն ուզեց բացել պատուհանի փեղկերը: Հենց այդ պահին տղան նետեց գնդակը և շառաչուն աղմուկով ապակիները փշրվեցին: Աղջիկը վախեցած իրեն հազիվ գցեց ցած: Նա նկատեց բակի տղաների փախուստը և ծիծաղեց:

Մայրը ներս մտավ:

— Ի՞նչ պատահեց,— անհանգիստ հարցրեց նա, բայց նկատելով կատարվածը, բարկացավ.— Ո՞վ արեց:

— Ես,— խոսեց աղջիկը խեղճացած:

— Ինչպե՞ս, սուտ խոսե՞լ ես սովորել,— նորից բարկացավ մայրը:

Աղջիկը զարմացավ, թե ինչպես մայրն իմացավ, որ ինքը չի ջարդել ապակին:

— Դրսից են ջարդել, ասա, ո՞վ ջարդեց,— նորից խոսեց մայրը:

Աղջիկը սաստիկ տխրեց, քիչ մնաց լաց լիներ, բայց մայրն ինչ-որ բան մտածեց և շոյեց աղջկա մազերը:

— Իջի՛ր, իջիր բակ մի քիչ խաղա,— ասաց մայրը և սկսեց մաքրել ապակու կտորտանքը:

Քիչ անց աղջիկն արդեն բակում էր: Հաստաբուն ծառի հետևից դուրս եկավ տղան: Նրա աչքերը կապո՛ւյտ-կապույտ էին:

— Ազնիվ խոսք, ես դիտմամբ չարի,— ասաց տղան:

Աղջիկը չխոսեց: Տղան կրկնեց.

— Ազնիվ խոսք, ես դիտմամբ չարի:

Աղջիկը նրան նայեց և ծիծաղելով ասաց.



— Գնդակդ լավն է:

Տղան ուրախացավ: Նա ուզեց ասել, որ միասին խաղան, բայց որովհետև դա չնչին բան կլիներ, լռեց:

Աղջիկն ասաց.

— Միասին խաղանք:

— Խաղա՛նք,— ուրախացած պատասխանեց տղան: Եվ նրանք մի ամբողջ ժամ խաղում էին իրար հետ:

Նկ. ԱՐԻԱ ԲՈՅԱՋՅԱՆԻ

## ԹՇՆԱՄԻՆ ՈՒ ԲԱՐԵԿԱՄԸ

ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ



Փործանք պատահեց
Անբախտ լորիկին.
Տունն հրդեհ ընկավ
Ամառվա շոգին:

Տեղն էր քեզ. ասաց
Ագռավն անլվա
Ու չոր խոտ լցրեց
Կրակի վրա:

Իսկ ծիծեռնակը
Թռավ դեպի ծով.
Ծովից ջուր բերեց
Փոքրիկ կտուցով:

Թեև հրդեհից
Տունը մոխրացավ.
Բայց բարեկամին
Լորիկն իմացավ:

## ԽԵԼՔԱՑԻ ՃԱԳԱՐՆ ՈՒ ԽԵԼՔԱՑԻ ՀՈՎԱԶԸ

(Վենեցուելական հեքիաթ)

Մի անգամ ճագարը քարին նստած մտածում էր զանազան բաների մասին: Նա չնկատեց, թե ինչպես անտառից դուրս եկավ հովազը: Սա հետևի կողմից թաքուն մոտեցավ ճագարին և հենց նրա ականջի մոտ մռնչաց.

— Բարի հաջողում, եղբայր ճագար: Հիմա ես քեզ, սիրելի փափլիկս, ատամներովս կփորձեմ:

Ճագարը սարսափահար տեղից վեր թռավ կակտուսից էլ բարձր ու ընկավ, փռվեց գետնին: Նրա աչքերը բվի աչքերից էլ լայն չռվեցին: Ի՞նչ անել: Իսկ հովազն արդեն սկսել էր շրթունքները լպստել:

— Իսկ դու, եղբայր հովազ, ի՞նչ մի լավ բան ես գտել իմ մեջ: Ես բոլորովին էլ փափլիկ չեմ, հավատա ասածիս, միայն մորթին ու ոսկորներս են: Դու նայիր այն բարձր ժայռերին. տեսնո՞ւմ ես, որքան հորթեր են արածում: Իսկ հորթի միսը գիտե՞ս որքան համեղ է:

Ի՞նչ կա որ, պատասխանեց հովազը, ապա՛ որեն նայելով բարձր ժայռին, եթե դու ինձ համար բերես երկու հորթ, իհարկե, ամենապարարտներից, ապա ես քեզ կուտեմ հետո, մի ուրիշ անգամ:

— Այ, դա հովազին վայել խոսք է, գոհունակությամբ ասաց ճագարը և ցատկոտելով բարձրացավ ժայռերը:

Հե՜յ, եղբայր հովազ, — ձայն տվեց նա վերևից, մինչև ես հորթերը ջոկեմ, դու մի լավ մարզվիր, երախդ բաց ու խուփ արա, թե չէ այս անպիտան հորթերը շատ են գեր:

Հովազի բերանի ջուրը գնաց: Բայց հազիվ էր նա գունչը վեր ցցած, երախը լայն բաց արել, երբ ճագարը մի մեծ քար գլորեց ներքև: Քարն ընկավ ուղիղ հովազի երախը:

Իսկ ճագարը հրճվանքից թափահարում էր թաթերը և ասում.

Այ այդպես, եղբայր հովազ, դե հիմա լավ ճանաչիր մերոնց:

ՆԿ. ԱՐՄԻՆԵ ԴԱԼԼԵՆՑԻ





## ԱՔԼՈՐՆ ՈՒ ԱՂՎԵՍԸ

(Վենեսուելական հեքիաթ)

*Մի անգամ աղվեսը նստել էր սալորենու տակ և սպասում էր։ Իսկ ո՞ւմ էր սպասում։ Իհարկե, աքաղաղին, որը ննջում էր ծառի վրա։*

*Երբ աքաղաղն արթնացավ և տեսավ, թե ով է ներքևում իրեն սպասում, իսկույն որոշեց. «Եթե մի ամիս էլ մնա, կնստեմ ու ցած չեմ իջնի։*

*Կեսօրին, երբ արևն ուղիղ գլխավերևումն էր, աքաղաղը թևերը թափահարեց և բարձրաձայն կանչեց.*

*— Ծուղրուղո՜ւ...*

*— Այդ ինչի՞ համար ես այդպես ուրախանում, սիրելի բարեկամ։*

*— Ինչպե՞ս թե ինչի համար, հիմա ինձ համար սուրճ կբերեն, արդեն նախաճաշելու ժամանակն է։*

*— Իսկապե՞ս։ Իսկ ո՞վ է բերելու։*

*— Երկու թագի և մեկ պահապան շուն։*

*— Ի՞նչ... ասենք, իսկապես, չէ՞ որ արդեն կեսօր է, լավ հիշեցրիր, իմ սուրճ խմելու ժամանակն էլ է։ Երևի արդեն եփել պատրաստել են, կամաց-կամաց գնամ հասնեմ, — ասաց աղվեսն ու կորավ թփուտների մեջ։*

*Ռուսերենից թարգմ.*
Գ. ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ



## ՈՐՍՈՐԴՆ ՈՒ ԹՌՉՆԱԿԸ

Որսորդը բռնեց թռչնակին։

Թռչնակը աղաչեց.

— Մի՛ սպանիր ինձ, բարի մարդ։ Միևնույն է, ինձանով չես կշտանա։ Խոստացիր, որ կթողնես ինձ քո կամքով, իսկ ես փոխարենը քեզ կտամ երեք լավ խորհուրդ։ Առաջին խորհուրդը դու կլսես հիմա։ Երկրորդ խորհուրդը ես քեզ կտամ, երբ կնստեմ այս ծառի վրա, իսկ երրորդը՝ երբ կթռչեմ մինչև այն ժայռը։

Որսորդն ասաց.

— Ապա, լսենք։

— Երբեք մի՛ ափսոսիր այն բանի համար, որը չի վերադարձվելու։

Որսորդին դուր եկավ այս խորհուրդը։



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Նա բաց թողեց թռչնակին։

— Երբեք մի հավատա այն բանին, որ չի կարող լինել, — ասաց նա, նստելով ծառի վրա։ — Այնուհետև վեր ճախրելով, պատասխանեց. — Հիմա՛ր մարդ։ Եթե դու ինձ մորթեիր, իմ ներսում կգտնեիր երկու մարգարիտ, որոնք անգին են։

Զայրացած որսորդը բացականչեց.

— Հաղորդիր ինձ երրորդ խորհուրդը, որից հետո կթռչես վերջնականապես։

— Իմաստ կա՞ արդյոք այդ անել, երբ դու հասցրիր արդեն մոռանալ նախորդ երկու խորհուրդները։ Ափսոսացիր, որ բաց ես թողել ինձ, և հավատացիր, թե իմ ներսում մարգարիտներ կան։ Ո՞վ է տեսել, որ թռչունի փորի մեջ թանկագին քարեր լինեն, որոնք պատահում են միայն ծովի խորքերում։

*Թարգմ. Օ. ՍԻԼՅԱՆ*



# Ինչու՞ ծերացար

ՄԱՐՈ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

*— Պապի՛կ, դու ինչո՞ւ ծերացար, — հարցրեց Ավիկը։*

*— Ծերացա, էլի, բալիկս, ծերացա։ Մեծացա, մեծացա ու ծերացա։*

*Իսկ ինչպե՞ս էիր մեծանում։*

*Շատ հեշտ։ Խելոք էի մնում, շատ էի ուտում, ժամանակին քնում։*

*Օ-Օ՜. որ այդպես է. ես խելոք չեմ մնա, քիչ կուտեմ ու երբեք էլ չեմ քնի։ Ես ծերանալ չեմ ուզում։*

## ՀԻՄԱՐԻՑ ՀԻՄԱՐԸ

Մի անգամ Փադիշահի ներկայությամբ, որը շատ էր սիրում ծիծաղաշարժ պատմություններ, խոսք բացվեց հիմարների մասին։

— Ինչպես պատահեց մի անգամ, հեռվից տեսնելով քաղաքի հայտնի հիմարին, —սկսեց Փադիշահի հյուրերից մեկը,—ես փեշիս տակ պահեցի տասներկու հավի ձու, որ գնել էի շուկայից։ Երբ այդ հիմարը մոտեցավ ինձ, ես ասացի նրան. «Իմացիր, թե ինչ եմ թաքցրել փեշիս տակ։ Թե իմանաս, բոլոր ձվերի կեսը քեզ կտամ։ Իսկ թե իմանաս քանի հատ են, բոլոր տասներկուսն էլ քեզ կնվիրեմ»։

Հիմարը կարմացքով ասաց. «Եղբայր, ես հո իմաստուն չե՞մ, որ իմանամ այն, ինչ չեմ տեսնում։ Գոնե նշաններից մի քանիսն ասա»։

«Դե՛, լսիր,— ասացի ես,— իմ թաքցրած առարկաների դեղին մասը տեղավորված է սպիտակ մասի մեջ»։ «Օ՜հ, իմացա՛, իմացա՛,— գոռաց այդ հիմարը։— Այդ, իհարկե, գազարն է բողկի հետ խառնված»։

Այս պատմությունը լսելով՝ Փադիշահի հյուրերը կուշտ ծիծաղեցին։ Սրտանց ծիծաղեց նաև ինքը՝ Փադիշահը։ Երբ ծիծաղը դադարեց, Փադիշահը դիմելով այդ պատմությունն անողին, շշուկով հարցրեց.

— Այնուամենայնիվ ասա, ինչ էիր թաքցրել փեշիդ տակ, որ այդքան երկար ժամանակ չարչարում էիր քաղաքի ամենահայտնի հիմարին։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## Ի՞ՆՉԸ ՀԻՇԵԼ, Ի՞ՆՉԸ ՄՈՌԱՆԱԼ

*Մի մարդ հարցրեց իմաստասերին.*

*— Ի՞նչը պետք է մարդ միշտ հիշի և ի՞նչը մոռանա։*

*— Եթե մարդիկ քեզ լավություն են արել, հիշիր այդ մասին։ Իսկ եթե դու ես ուրիշներին լավություն արել, աշխատիր մոռանալ,— պատասխանեց իմաստասերը։*

Թարգմ. ՍԻՐՎԱՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

## ՇՈՒՏԱՍԵԼՈՒԿՆԵՐ

*Շարա՛, Սարոյի շորին սարի սիրուն շուշան շարի...*

*Ճայի ճուտը կերավ ծտի ճտի կուտը...*

Առաջարկի՝ ԿԱՐԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ

# Գարնանային լուսաբաց

Գարնանային դու իմ պայծառ լուսաբաց,
Անտառում եմ դիմավորում լույսդ ես.
Ինձ գրկում են ծաղիկները ցողով թաց,
Ես էլ ցողով լվացվում եմ նրանց պես:
Այն առաջվա չարաճճին էլ չկա,
Որ ագռավի բնից ձվեր էր հանում.
Ա՜խ, ուրիշ է խենթությունը աղջկա,
Ուրիշ տեղ են երազները սավառնում:
Թավիշ դաշտից ջինջ մշուշ է բարձրանում,
Խենթացնում է խոտի բույրը ջերմաշունչ,
Ալ գույներով ծաղիկները վառվռուն
Լույս են սփռում իրենց շուրջը ու անուրջ:
Աղմկում են ճնճղուկները կռվասեր,
Նրանց գետակն է կարկաչով խրատում,
Ու թվում է, թե ամեն ինչ երգ ու սեր,
Թե ամեն ինչ երգ ու սեր է աշխարհում:
Ես գրկում եմ նռնու բունը շաղով թաց,
Ու հոգուս մեջ սավառնում է ջինջ մի երգ,
Գարնանային դու իմ պայծառ լուսաբաց,
Անտառում եմ դիմավորում լույսդ շեկ:

ՌՈՒԶԱՆ ՆԱՍԻԲՅԱՆ

*(Նոյեմբերյանի միջնակարգ դպրոցի աշակերտուհի)*



ՍԱՄԻԿԻ ԴԻՄԱՆԿԱՐԸ

ՍԱՐԳՍՅԱՆ ՆԵՐՍԵՍ

*(Արտաշատի շրջան, գյուղ Շահումյան, 7-րդ դաս. աշակերտ)*



# Թե ինչպես «հարստացրի» իմ կոլեկցիան

Հետո էլ ասում եք՝ մի՛ բարկանա: Ախր ինչպե՞ս չբարկանաս,-երբ ուզում ես կարգին գործ կատարել, իսկ փոքր քույրիկդ խանգարում է:

Առավոտյան արթնացա, պարանի վրա մի քանի ցատկումներ կատարեցի, լվացվեցի և վազեցի մառանը, հավերի համար կուտ բերելու: Մոտեցա այն դույլին, որտեղ այդ հավերի կերակուրն էր, և ի՜նչ տեսնեմ. դույլի մեջ մի առնետ է մտել, այն էլ ի՞նչ առնետ. պոչը կտրած քոսոտ առնետ: Երևի մի կատու էլ դրա քոսոտ պոչով էր քեֆ արել, կամ... էլ ի՞նչ եմ երկարացնում: Այնքան զզվելի էր, որ մի թուղթ վերցրի և այդ անամոթ առնետին դույլով դուրս տարա: Այնպես էի բարկացել պոչը կտրած հիմարի վրա, այնպես, որ նա երևի զգում էր իմ բարկությունը, դրա համար էլ կծկվել էր դույլի մեջ և վախենում էր. նույնիսկ, բեղը շարժել: Խե՜ղճ ճավեր, հիմա ինչպես ուտեն այդ կեղտոտ կուտը: Բայց և այնպես, հո բարկությունս այդ անմեղ թռչունների վրա չէի՞ թափելու: Վերցրի կոմպոտի դատարկ ամաններից մեկը և ցանկացա այդ անխելք անասունին բռնել: Գիտեի, որ մայրիկս կասեր. «Դու էլ, քո կոլեկցիան էլ: Ամանը ափսոս է, մի՛ աղտոտի: Սկանը զարու հետ թափիր»: Հիմի կասեք, թե դա ի՞նչ կոլեկցիա է, որ ասում եմ, Դե, ամառ է, ես էլ պարապ չէի՞ նստելու: Բույսերի և կենդանիների հավաքածու էի պահում: Հենց որ այդ վախկոտին տեսա, ասացի. «Ըհը՛, լավ պատառ է կոլեկցիայիս համար»: Գցեցի կոմպոտի դատարկ ամանի մեջ, թիթեռի ցանցով ծած-



# Իմ մայրիկը

Մի մայրիկ կա աշխարհում՝
Կապուտաչյա ու սիրուն։
Իմացեք դուք, թռչնիկնե՛ր,
Թիթեռնիկնե՛ր, ծաղիկնե՛ր,
Միշտ ժպտերես, խնդագին,
Նա մայրիկն է իմ անգին։

Սիրտը՝ բարի ու քնքուշ,
Լեզուն՝ մեղմիկ ու անուշ.
Իմացեք դուք, թռչնիկնե՛ր,
Թիթեռնիկնե՛ր, ծաղիկնե՛ր,
Միշտ ժպտերես, խնդագին,
Նա մայրիկն է իմ անգին։

ՖԼՈՐԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ.
(Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 5-րդ դաս. աշակերտուհի)

# ԱՄՌԱՆ ԳԻՇԵՐ

Փայլում են լուսաչ աստղերը հեռվից,
Լուսինն է ժպտում մորս դեմքի պես։
Մեղմիկ մի լույս է հոսում վերևից
Ու շոյում դեմքս մատներով անտես։

Ու, միտք եմ անում մեր տան կտուրին,
Աչքերս հառած երկնքին անհուն,
Թե գուցե մեկն էլ հեռու աստղերից
Նստել կտուրին ու մեզ է նայում։

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ
(Լենինականի № 16 դպրոցի աշակերտ)



...եցի, որպեսզի օդ շնչի. այնուհետև մի քար դր-
...եցի վրան, որպեսզի չփախչի. ապա գնացի իմ
...ործին։ Հարկավոր էր այդ խեղքը պակասի հա-
...ար մի գեղեցիկ վանդակ պատրաստել...

Հազիվ կես ժամ էր անցել, երբ լսեցի փոքր ...րոջս ձայնը. «Մու՛կը, մուկը փախավ, մո՛ւկը...» ... են նետեցի ձեռքիս պարագաները, որոնցով ու...ում էի վանդակ պատրաստել, և իսկույն վազեցի ...րոջս մոտ։ Նրա խելքին փչել էր տեսնի, թե ...նչ է անում մուկիկը։ Վերցրել էր քարը, իսկ ...ավազակը սուր-սուր ատամներով ցանցի թելերը ...ախօրոք կրծելիս էր եղել։ Ազատություն զգալով ...ողը փախել էր։ Հիմա էլ այս երկրորդ հիմարի՝ ...րոջս վրա բարկացա և ականջները ծգեցի։

Ահա այսպես, պոչը կտրած վախկոտ մուկիկը «հարստացրեց» իմ կոլեկցիան։

ԱՆԱՀԻՏ ՀՈՎՍԵՓՅԱՆ
(Մեղրի, Շահումյանի անվան դպրոց, 8-րդ դաս. աշակերտուհի)

# Այս առուն

— Ինչո՞ւ ես այդքան դու պարծենում, ծո՛վ,
Քո երգած ամեն, ամեն մի երգով.
Մի՞թե այդքան երգ դու ես հնարում
Եվ քո սրտից ես լույս աշխարհ հանում.
Չէ՞ որ երգերն այդ, որ դու ես երգում,
Վաղուց է երգել այս փոքրիկ առուն։

ՄԵՍՐՈՊ ՍԱՀԱԿՅԱՆ
(Լենինականի № 5 գիշերօթիկ դպրոցի աշակերտ)




ՌԱՍՈՒԼ ՓԱՐՎԻԶԻ

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Նարնջենու խիտ տերևները մթնեցրել էին դասարանը: Գրատախտակը նոր էին մաքրել մի կեղտոտ թաղիքի կտորով, և կավճի փոշին ալիքավորվում էր օդի մեջ:

Ուսուցիչը դեռ չէր եկել:

Քոսոտ գլխով Սեյիդ Մահմուդը իմ առջև էր նստած: Նա սրիչը վարպետորեն սեղանին էր ամրացրել ու, մատնահարելով, ուշադրությամբ լըսում էր իր մանկական սազի համաչափ նվագը: Աքբարը գրչահատով պատի վրա իր անունն էր փորագրում և այն շրջանակում վարդ ու սոխակի զարդանկարներով: Աբասն էլ արագ-արագ տնային աշխատանքն էր ջանում կատարել:

— Ուշադրությո՜ւն, ոտքի՛:

Պարոն ուսուցիչը ներս մտավ, և շարադրության դասն սկսվեց:

Նախորդ շաբաթ օրը ուսուցիչը շարադրության թեմա էր թելադրել. «Մի նամակ գրեք ձեր հորը և նրանից խնդրեք, որ քննություններից հետո՝ ամառային արձակուրդին՝ ձեզ ամառանոց տանի»:

Շարադրություն գրելու հատուկ ձևեր կային: Թեմաները միանման էին: Պետք էր նամակ գրել մեր հորը, մորը, եղբորը, քրոջը և վերջապես ընկերոջը, կամ էլ շարադրել արդարության, ազնվության, ճշմարտության և նման բաների մասին:

Հորն ուղղված նամակն այսպես էր սկսվում.

«Ո՜վ իմ տեր, մատաղ լինեմ Ձեզ, հուսով եմ, որ աստվածահնությամբ օժտված Ձեր հարգելի էությունը կատարյալ առողջության և հաջողության մեջ է: Այնուհետև, եթե չնչին բաներով փորձեք հետաքրքրվել ու հարցներ նվաստիս վիճակի մասին, փառք ալլահին, առողջ է և զբաղված է Ձեզ համար աղոթելով»:

Իսկ երկրորդ՝ բարոյական բնույթի շարադրությունը գրվում էր այսպես.

«Իհարկե, պարզ և ակնհայտ է, նմանապես՝ ոչ ոքի համար գաղտնիք չէ, որ ճշմարտացիությունը մարդկային բնավորության գովելի հատկություններից մեկն է: Եվ եթե մեկը օժտված լինի այս հատկությամբ, ապա նվաստության սուզակետից վսեմության բարձունքներին կհասնի»:

Հիշում եմ, միապաղաղ, անընդհատ կրկնվող բառերն այնքան էին լսելիքս աղոտում, որ շարադրության դասը վերջանալուց հետո գլուխս պտտվում էր: Թվում էր, թե դասարանը փոխարկվում էր տաղտկալի ու կիսամեռ արտահայտությունների մի աղբանոցի, իսկ այդ դժբախտ ու թշվառ բառերի հոգին դուրս էր գալիս ուսուցչի ու աշակերտների ձեռքից...

Ուսուցչի պատվերով յուրաքանչյուրը կարդում էր ամառանոցին նվիրված իր շարադրությունը: Ահա հերթը հասավ Իբրահիմին:



Իբրահիմը մի աղքատ տղա էր, բայց մենք սիրում էինք նրան, որովհետև հանդուգն էր նա, ըմբոստ, միևնույն ժամանակ՝ բարի։ Հետո, նա ավելի աշխարհ տեսած էր, քան մենք, գիտեր մարդկանց հետ վարվելու եղանակը։ Տան ծառայի գործն ինքն էր անում, զբաղվում էր առևտրով, գլուխ դնում խորամանկ խանութպանների հետ։

— Իբրահի՛մ, եկ շարադրությունդ կարդա,— հրամայեց ուսուցիչը։

— Աչքիս վրա, պարո՛ն։

Իբրահիմը տեղից բարձրացավ, կարկատած շալվարը վեր քաշեց, շարադրությունը վերցրեց և, խոշոր աչքերը շրջապատին հառած, կանգնեց ուսուցչի սեղանի մոտ։

— Ինչո՞ւ չես կարդում, անպիտան, կարդա՛։

Զայրույթը սեղմում էր Իբրահիմի կոկորդը։ Կարծես մի ծանր բեռ ճնշում էր նրա ուսը։ Նա մի քիչ կռացավ, կարճատես աչքերը հառեց տետրին ու կարդաց.

— «Հայր իմ, կոպիտ ու չար հայր։ Պարոն ուսուցիչը չգիտի, թե ինչ դժոխքում եմ ապրում ես։ Նա Ձեր համառությունից ու կոպտությունից, իմ դժբախտությունից ու թշվառությունից լուր չունի։ Նա հանձնարարել է նամակ գրել Ձեզ և խնդրել, որ արձակուրդին ինձ ամառանոց տանեք։ Ամառանոց տանեք, որ խաղամ, ուրախանամ առվի եզրին, ծաղիկ քաղեմ, վազեմ աղջիկների հետևից, քաշեմ նրանց մազերից, ծեծեմ, լացացնեմ նրանց, ծառերը բարձրանամ, ջուր ցանեմ խաղընկերներիս վրա, հետո, սուլեմ ցողունից պատրաստած սուլիչով, օրորվեմ՝ ճոճանակին նստած, միրգ թռցնեմ հարևանի այգուց, սարերը ելնեմ... Իսկ երբ իջնի երեկոն, ջարդված ու հոգնաբեկ տուն վերադառնամ ու տատիս ծնկներին հենված, լսեմ նրա կախարդական հեքիաթները... Ի՜նչ հաճելի ցանկություն...

Պարոն ուսուցիչը չգիտի, որ ամառանոցի փոխարեն ինձ մտրակում եք Դուք ամեն առավոտ։ Հացի գնալու համար քացով եք ինձ քնից արթնացնում։ Ես ամառանոցի փոխարեն փափագում եմ միայն մեկ անգամ տեսնել Ձեր ծիծաղը... Նա չի եղել մեր տանը, չգիտի նա, թե ընտանեկան համերաշխության փոխարեն ինչ աղմուկ է տիրում այնտեղ։ Որտեղի՞ց իմանա, որ շարունակ կռվում եք մորս հետ, իսկ մայրս անիծում է Ձեզ։ Պարոն ուսուցչի ի՜նչ հոգն է, թե երեկոները դասերս կիսատ թողած՝ շիշը ձեռքիս պիտի վազեմ օղեվաճառի խանութը՝ օղի բերելու։

Ուսուցիչս ուզում է, որ ես՝ դժբախտս, ամառանոց գնամ։ Եվ այժմ ես պետք է կեղծավորություն անեմ, խաբեմ և խնդրեմ Ձերդ մեծությունից, որ ամառանոց տանեք ինձ։

Ո՛չ, ես ամառանոց չե՛մ ուզում, ուզում եմ գեթ մեկ անգամ փաղաքշեք ու սիրեք ինձ... Փափագում եմ ինձ հանգիստ արթնացնեք քնից, չհայհոյեք, գիշերվա սարսափելի խավարին օղու չուղարկեք և, եթե հաց, պանիր կամ միս եմ գնում, դրանց մեջ պակասություն չորոնեք և կրկին խանութ չուղարկեք, որ գնածներս վերադարձնեմ։

Խանութպաններն ինձ ծաղրում են, ձեռ առնում, ես այլևս չեմ կարող դիմանալ այդ ստորացմանը։



Ո՛չ, ես ամառանոց չե՛մ ուզում, ուզում եմ գոնե մի օր չհանդիպել նենգ ու խորամանկ խանութպաններին։ Նրանք ինձ վիրավորում են, ստորացնում, իսկ ես ուժ չունեմ նրանց ծեծելու և լաց եմ լինում դառնությունից... Բայց ինչքա՞ն կարելի է լաց լինել։

Հայրիկ ջան, ես ամառանոց չե՛մ ուզում, միայն մի՛ ծեծեք մորս, և մայրս թող չանիծի Ձեզ։ Ես սիրում եմ երկուսիդ էլ։ Ինչպե՞ս վարվեմ ես, երբ կռվում եք։ Միանամ մորս ։ Ձե՞զ անիծեմ, թե՞ Ձեզ հետ համաձայնած՝ կռվեմ անմեղ մորս հետ։ Մենք սիրում ենք մեկմեկու, ինչո՞ւ սիրալիր չլինենք, ինչո՞ւ միմյանց չգուրգուրենք... և ինչո՞ւ ենք մեր տունը գորշ գերեզմանի վերածել։

Ո՛չ, ես ամառանոց չե՛մ ուզում...

Ուզում եմ այս մութ ու մռայլ գերեզմանը լուսավորվի և գեթ մի պահ ընտանեկան ջերմություն զգամ...»

Մինչ Իբրահիմը հեկեկում էր, դասարանը, արցունքը պահած ընկղմվել էր խոր լռության մեջ։ Ուսուցիչը գլուխը հենել էր ձեռքերին։ Ես նկատեցի, թե ինչպես արցունքի երկու կաթիլ հոսելով նրա աչքերից՝ ընկավ դասամատյանի վրա...

— Սիրտս կտոր-կտոր արեցիր, Իբրահիմ, գնա նստիր, այլևս չեմ կարող լսել...

Պարսկերենից թարգմ.
ԱՆԱՀԻՏ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ՃԱՆԱՊԱՐՀ

Ռ. ՇԿԱԴՈՒՍ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

— Բարի ճանապարհ, որդիս։ Շաբաթ երեկո քեզ ենք սպասում։

«Վոլգան» թափով պոկվեց տեղից։ Մեր հեռևում մնաց Սուխումին, ապա Օչեմչիրը։ Այժմ մենք գնում ենք դեպի լեռները։ Ընկերներս պատմում են զվարճալի պատմություններ, ծիծաղում։ Ես չեմ մասնակցում անհոգ խոսակցությանը. նայում եմ ասֆալտապատ ճանապարհին, որն իմ մեջ արթնացնում է դառը հուշեր։

... Այդ օրը ես ստացել էի իմ առաջին աշխատավարձը։ Արդեն մի քանի անգամ հաշվել էի շխշխկացող թղթադրամները, հիացել նրանցով. չէ՞ որ դրանք ես էի վաստակել։

Դպրոցը վերջացնելուց հետո, ուզեցի ինստիտուտ ընդունվել, բայց չհասցրի։ Մեկնեցի հանքերը։ Բրիգադիրը ինձ գովեց։ Բանից դուրս եկավ, որ ես համարյա իսկական լեռնագործ եմ։

Եվ ահա լեռնագործիս երկշաբաթյա աշխատավարձը։ Ի՞նչ գնել։

Ինձ շատ բան է հարկավոր, վերարկու, լավ կոստյում, կոշիկ։ Բայց այդ բոլորը գնելու համար գրպանումս ունեցածը քիչ է։ Ուրեմն կգնեմ ամենից անհրաժեշտը։ Այստեղ ես հիշեցի հայրկիս, մայրիկիս, եղբայրներիս և քրոջս։ Իհարկե, նրանք չեն վիրավորվի, եթե նրանց մի բան չընծայեմ, բայց արդյո՞ք խիղճս հանգիստ կլինի...

Քայլում եմ այնպիսի մի զգացումով, որ կարծես ինձնից հարուստ ոչ ոք չկա։ Ահա հրաձգարանը (տիրը)։ Թե որ մոտս լիներ հայրական փողը, անպայման կմտնեի, իսկ հիմա՝ ոչ, չեմ կարող։

Մտնում եմ ամենամեծ խանութը։

— Ի՞նչ արժե ահա այս վերնաշապիկը,— այս ու այն կողմ աչք ածելուց հետո վերջապես հարցնում եմ վաճառողուհուն։

— Տասնմեկ ռուբլի։

«Հիմա ձմեռ է, իսկ վերնաշապիկները ամառային են» — մտածում եմ ես։

— Իսկ այն կարմիր կոշիկնե՞րը։

— Ուղիղ երեսուն։

— Իսկ այս շրջազգե՞ստը։

Զգում եմ, թե ինչպես սպառվում է վաճառողուհու համբերությունը։

— Ծրջազգեստն արժե տասնութ ռուբլի։

Որոշում եմ գնել այն, մորս համար։

— Փաթաթե՛ք։

Այդ պահին աչքովս է ընկնում մի շերտավոր շալ, որն անմիջապես հիշեցնում է ինձ իմ ամենասիրելի մարդուն՝ տատիկիս։

— Սպասե՛ք, ընկերուհի, կներեք, իհարկե, շրջազգեստը հարկավոր չէ։ Տվեք ինձ խնդրեմ ահա այն շալը։

— Երիտասարդ, այստեղ ձեզանից բացի...— սկսում է բարկանալ վաճառողուհին։

— Ես արդեն ներողություն խնդրել եմ, բայց ինձ հարկավոր է հենց այդ շալը։ Այսինքն ոչ թե ինձ, այլ տատիկիս։

— Ի՞նչ արժե։

— Վրան գրված է,— աղջիկը հեգնորեն ծոմըռում է շրթունքները։

Համրում եմ փողը՝ ծանրաբարո, ուշադիր։ Վերջապես գտա ամենահարկավոր բանը։



— Ստացե՛ք դրամը, առաջին աշխատավարձս է:

Վաճառողուհին կարծես ամեն ինչ հասկացավ: Ես դա զգում եմ նրա լավ ժպիտից:

— Այցելեցեք մեզ ամեն աշխատավարձ ստանալիս:

Ես ուրախ-ուրախ դուրս եմ գալիս խանութից և որոշում անմիջապես գնալ տատիկիս մոտ, չէ՞ որ շաբաթ օր է, իսկ նրան վաղուց չեմ տեսել, դպրոցը վերջացնելուց այս կողմ: Կգնամ, կուրախացնեմ իմ լավ, իմ աննման տատիկին: Այս տաքուկ շալը ես նրա փոքր ուսերին կգցեմ: Ինչպե՜ս կուրախանա նա... Թոռներից ամենից մեծը ես եմ ու մինչև այժմ ոչինչ չեմ նվիրել նրան, նույնիսկ մի գլխաշոր:

Տատիկը շատ, շատ ծեր է: Տարիները և աշխատանքը կռացրել են նրան: Բայց որքա՛ն, որքա՛ն բարի՜ է նա... Ինչքա՜ն հեքիաթներ գիտի:

Գնում եմ այն ճանապարհով, որ ուղիղ մեր գյուղն է տանում: Սիրտս կարծես պոկվում է տեղից, ձգտում դեպի ձյունապատ լեռները, որոնց ստորոտում ապրում է տատիկս:

Այ թե ճանապարհ է հա՜... Ամեն քայլափոխում փոս, խանդակ: Ջրափոսերը պսպղում են ինչպես կոտրված հայելու բեկորներ: Մեքենաներն այստեղից հազվադեպ են անցնում: Իմ բախտից ինչ-որ հին, կիսավեր մի ավտոմեքենա հանդգնեց անցնել այդ սարսափելի ճանապարհով: Վարորդը լուռ կանգնեցրեց այն, սպասեց, մինչև ես թափքը կբարձրանայի ու շարունակեց քշել դարուփոսերի վրայով:

Մեքենան թռչկոտում էր թևը կոտրած ճնճղուկի նման, մի կողմից մյուսին թեքվում, դժվարությամբ դուրս գալիս խանդակներից: Ճանապարհի ոլորանում ես թակում եմ խցիկի տանիքը և, երբ մեքենան կանգ է առնում, ցատկում եմ ուղիղ ցեխի մեջ:

Շարունակում եմ ճանապարհս դեպի վեր, լեռնային արահետով: Լեռնանցքից երևում է Ալիս գետը, որի կապույտ կոհակների մեջ ամռանը լողանում էի տղաների հետ:

Ահա և գյուղը, կլոր, կանաչապատ մարգագետնի նման փռվել է ձյունածածկ լեռան ստորոտում: Տեսնում եմ տատիկի տունը, նրա կողքին՝ հացատունը: Վերջինիս տանիքից գալարապտույտ բարձրանում է ծուխը:

Վերջապես հասել եմ նպատակիս: Կամաց բակ եմ մտնում, աշխատելով զսպել փայտե դարպասի ճռռոցը: Ուզում եմ հանկարծակիի բերել: Սակայն ինձ արդեն նկատել ու ճանաչել է մեր հին գամփռը՝ Մինան: Նա չի աղմկում, ինչպես միշտ, չի հաչում և ուրախ վնգստալով ազդարարում իմ գալուստը, նա միայն քսվում է ծնկներիս, թափահարելով քարշ ընկած պոչը, որի վրա խճճվել է կռատուկը: Հետո փորփրում է խոհանոցի առջևի



հողը և, չգիտես ինչու, թախծոտ նայում ինձ:

Մտնում եմ հացատուն: Ծխով լիքն է: Անսովոր խառնակություն է տիրում այնտեղ: Մի անծանոթ կին նստած է օջախի մոտ, որի մեջ թշշալով ծխում է թաց փայտը: Նախօրոք պատրաստած ժպիտը չքանում է դեմքիցս:

— Իսկ մերոնք որտե՞ղ են:

Կինը վախեցած շտկվում է:

— Ա՜խ, չճանաչեցի: Դու Նանդուլի թո՞ռն ես: Խեղճ Նանդուլ, աչքը քո ճանապարհին էր...

Ես անսովոր ցուրտ զգացի:

— Ի՞նչ է պատահել նրան:

— Տանը պառկած է... Թոքերի բորբոքում երկու կողմից: Քիչ հույս կա:

Նետվում եմ տուն: Տանս սենյակը լիքն է մարդկանցով: Ծխախոտի թանձր ծուխը կախվել է առաստաղից: Մոտենում եմ մահճակալին: Տատիկիս գլխատակը բարձ չկա: Ըստ սովորության, դա նշանակում է, որ հիվանդը վերջին րոպեներն է ապրում:

Փղձկալով, ծնկի եմ գալիս նրա առջև:

— Ի՞նչ է պատահել քեզ, իմ քաղցր Նանդուլ:

Շոյում եմ նրա դալկացած ու պաղ ձեռքերը, համբուրում ճակատը:

— Դեղիկո, մի տես ո՞վ է եկել... թոռնիկդ... Ախր ո՜նց էիր նրան սպասում,— կերկերուն ձայնով ասում է հորեղբայրս:

— Դո՛ւ ես, ջանիդ մեռ...— հազիվ լսելի շշնջում է տատիկս:

— Ես եմ, Նանդուլ, եկել եմ... պինդ կաց, իմ աննման տատիկ: Ես բժիշկ կբերեմ:

Մի քանի վայրկյան թվում է, թե հիվանդի վիճակը լավանում է: Նա նույնիսկ կարծես թարմանում է: Ծերունիները խորամանկ ժպտում են:

— Ահա տեսնո՞ւմ եք, թոռնիկը եկավ թե չէ, ամեն ինչ դեպի լավն է գնում:

Ոգեպնդվելով այդ խոսքերից, հորեղբայրս հարևաններին առաջարկում է գնալ հանգստանալ: Նրանք ամբողջ գիշերը հիվանդի մահճակալից չեն հեռացել: Բոլորը դուրս են գնում: Ես ու հորեղբայրս մնում ենք շեմքին կանգնած:

— Ես կգնամ բժշկի հետևից... Հիմա՛ կգնամ,— ասում եմ ես:

— Երեկ նա եղավ այստեղ: Այժմ դժվար թե գա,— դանդաղորեն պատասխանում է հորեղբայրս:

— Ինչո՞ւ:

— Ինքդ խոմ տեսնում ես, ինչպիսի ճանապարհ է: Սատանան գիտի, թե երբ վերջապես լավ ճանապարհ ենք ունենալու:

— Հետս ձի կվերցնեմ,— համառում եմ ես:

— Միևնույն է, չի գա: Թամբի վրա նստել չի կարողանում, իսկ երկրորդ անգամ վեց կիլոմետր այսպիսի ճամփա ոտքով կտրել՝ չի համաձայնի: Հարևանի տղային ձիով քաղաք եմ ուղարկել դեղեր բերելու: Ով գիտի, երբ կգա: Անիծված ճանապարհ...

Անզորությունից աչքերս խոնավանում են:

Հիվանդանոցում ձեռաց տատիկիս կբուժեին, բայց ինչպե՞ս այդ հյուծված էակին պառկեցնել մինչև խճուղի տանել, փոսերի ու խանդակների վրայով ու հետո էլ քաղաք հասցնել: Բռունցքներս սեղմվում են: Վերադառնում ենք սենյակ:

— Պառկեք, սիրելի որդիներ, պառկեք հանգստացեք, ես արդեն լավ եմ,— պահանջում է տատիկը նվաղուն ձայնով:— Թոռնիկիս լավ ծածկեք:

Ես և հորեղբայրս պառկում ենք սրահում, իսկ հորաքույրս մնում է տատիկի մոտ: Երազում ինձ տեսնում եմ բժիշկ դառած: Քննում եմ տատիկիս, դեղ տալիս նրան, և նա տեղնուտեղը ոտքի է կանգնում: Մենք բոլորս ուրախանում ենք:

Արթնանում եմ բավական լավ տրամադրությամբ:

Լուսանում է: Հորեղբորս անկողինը դատարկ է: Արագ հագնվում և վազում եմ տատիկիս սենյակը: Հորեղբայրս և հորաքույրս լուռ կանգնած են Նանգուլի մոտ, որը ծածկված է իմ բերած շալով: Նրանց դեմքին տեսնում եմ հլու հնազանդություն՝ այն բանի առաջ, ինչ անխուսափելիորեն պիտի պատահի:

— Իմ ազիզ բալա... տաք հագնվիր, մի՛ մրսածրու քեզ... Դու ինձ համար շալ ես գնել... Շնորհակալությո՜ւն... Ծախսի տակ գցեցի քեզ:

Տատիկը խոսում է դժվարությամբ և այնքան կամաց, որ ես ավելի շուտ շրթունքների շարժումից, քան ձայնից եմ այդ հասկանում:

Մի թույլ ժպիտ, ստվերի պես, մշուշում է նրա դեմքը:

Նանգուլն փորձում է շալը մի կերպ իր վրա քաշել, ձեռքը թուլացած կախվում է մահճակալի եզրին:

... — Կանգնեցրեք,— դիմում եմ վարորդին՝ սթափվելով վաղեմի հիշողություններից: Դուրս եմ թռչում մեքենայից ու մոտենում հողաթմբին, որ շրջապատված է քարե ցածրիկ պատերով:

Ինձ մոտենում է ծանոթ մի կոլտնտեսական: Հրավիրում է տուն հանգստանալու: Ես հրաժարվում եմ: Շտապում եմ:

— Ուրախալի լուր ենք իմացել,— ասում է նա:— Քեզ նշանակել են նոր հանքահորի բժիշկ: Դա ճի՞շտ է:

— Այո՛, ճիշտ է,— պատասխանում եմ ես աչքս չկտրելով տատիկիս շիրմից:

— Բայց ես բուժելու եմ բոլորին... ձեր գյուղի բոլոր բնակիչներին: Երբ պետք լինեմ՝ կանչեք:

Մենք շարժվում ենք առաջ: Ես ամբողջ ճանապարհին խորհում եմ. «Նա կարող էր ապրել մինչև այս օրը, եթե նրան այցելեր բժիշկը: Այժմ ես ինքս բժիշկ եմ, իսկ գյուղ տանող ճանապարհը ոչնչով նման չէ այն սարսափելի հնին, որը մինչև հիմա էլ ժանգոտ մեխի նման խրված է ուղեղումս ու դուրս գալ չի ուզում... Ինչու՞ նա չապրեց գոնե մի փոքր էլ...»

*Ադրբեջաներենից թարգմ. Ի. ՍԱՄՎԵԼՅԱՆ*



ՎԻԿՏՈՐ ԿՈՉԵՎՍԿԻ

# ԵՐԿՈՒ ՓՈՔՐԻԿ ԿԱՂՆԻ



Երկու կաղին՝ հողում ընկած,
Գիրկ գրկի մեջ անցյալ տարուց,
Կոշտ կեղևը արդեն ճեղքած՝
Ծիլ են տվել տաքանալուց։

Բուքն է սուլել նրանց գլխին,
Նրանց ճնշել են սառույցներ,
Բաբախում են այժմ ուժգին
Նրանց կրծքում երկու սրտեր։

Արկտիկական ցուրտ էլ լինի,
Այժմ նրանց չի վնասի,
Որպես երկու եղբայր հիմի
Հենված են միշտ իրար ուսի։

Ահավոր չէ նրանց համար
Արդեն ո՛չ ցուրտ, ո՛չ հողմ դաժան,
Կդիմանա ծիլը դալար՝
Արմատներով միշտ անբաժան։

# ՀՈՂԻ ԿՈՇՏԸ

Դպրոցական գրքերիս մեջ,
Իմ սեղանի կողին,
Լուցկու դատարկ մի տուփի մեջ
Դրած կոշտ կա հողի։

Երբ ցանք էին անում դաշտում,
Հողն այդ ես տուն բերի,
Գնում էի երբ հետևից
Բանող տրակտորի։

Թարմություն էր բուրում գարնան,
Ինչպես նոր վարած հող,
Ուր իջնում են հանգստանան
Կռունկները եկող։

Ջուր չէր ընկած կողքի վրա
Դաշտում կոշտն այդ փոքրիկ,
Սեղմված էր ափում նրա
Ցորենի մի հատիկ։

Մինչ տուն եկա ես դպրոցից
Սովոր ճամփով անշեղ,
Դուրս էր նայում հողի կոշտից
Մի կանաչիկ ասեղ։

Ինչո՞ւ թողնեմ, որ չորանա
Ծիլն այդ սեղանիս զուր,
Արձակ դաշտ են տենչում նրա
Արմատները դեռ թույլ։

Ու ես տարա դաշտը կրկին
Այդ կոշտը փայլփլող,
Թող որ նրան այնտեղ գտնի
Գարունն արևաշող։

Թարգմ. Գ. ՎԻՐԱՊՅԱՆ

# Գիշերային արշավ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



Ամպի տակից աստղերն ելան,
Հոգնած քամին առավ դադար,
Քարոտ լանջով բարձր լեռան
Մենք գնում ենք դեպի կատար։
Լուռ քնած են խոտ ու ծաղիկ,
Ծղրիդներն են միայն անքուն,
Մեր անհանգիստ ոտնաձայնին
Նրանց երգն է արձագանքում։
Ժպտում են լույս աչքեր դարձած
Կրակները հեռու-մոտիկ,
Աստղերն ասես իջել են ցած
Ու դարձել են լուսատտիկ։
Երբ առնում ես մի պահ հանգիստ
Թեքվում սարի պաղ աղբյուրին,
Խառնվում է՝ ուսապարկիդ
Հացի բույրը ծաղկանց բույրին։

Արծաթ լույս է մաղում գլխին
Երկինքն իր մեծ մաղը առած.
Արթնանում է քնած մի ծիտ,
Գնդակի պես նետվում առաջ.
Եվ հավքերը միանգամից
Այնքան լավ են երգում հանկարծ,
Որ մնում է զարմանալուց
Ջրայրների բերանը բաց.
Լուսինն անգամ լեռան գահից
Հիանում է այս հրաշքով.
Երազ է սա գիշերային.
Մենք տեսնում ենք արթուն աչքով
Բարձրանում ենք ահա, ահա,
Ոտք ենք դնում լեռան գահին.
Լուսաբացով է վերջանում
Մեր արշավը գիշերային։

# ԻՆՉՊԵՍ ՁԵՎԱՎՈՐԵԼ ՊԱՏԻ ԹԵՐԹԸ

Եկեք խոսենք այն մասին, թե ինչպես պետք է գեղեցիկ ու ճաշակով ձևավորել պատի թերթերը: Հաճախ անշնորհք ու վատ ձևավորման պատճառով թերթը չի հասնում իր նպատակին. նույնիսկ աշակերտները չեն մոտենում նրան և չեն էլ ուզում կարդալ: Մեծ-մեծ տառերով գրելով թերթի անունը, տառերն այնպես են ծամռում, ներկում տարբեր գույներով, որ հնարավոր չի լինում անգամ կարդալ: Դրան գումարած այն, որ շուրջը լցնում են խայտաբղետ նախշեր, ստացվում է անբովանդակ ու ճչացող գույների կույտ:

Ամռանը Ծաղկաձորի ճամբարներից մեկում, պիոներական ջոկատի հաջող արշավից հետո, պատի թերթ լույս ընծայեցին: Արշավի հինգ մասնակիցներ նկարագրել էին իրենց տպավորությունները, գրել էին բավականին հաջող, ոգևորված նյութեր: Սակայն ձևավորող նկարիչը այնպես էր նկարազարդել թերթը, որ դարձել էր բովանդակությանը ու միջատներին նվիրված քարտեզ: Ամբողջ թերթը լցված էր գույնզգույն ծաղիկներով, տարբեր տեսակի թռչուններով, միջատներով և բազմաթիվ այլ նախշերով: Իսկ գրված նյութերը հազիվ էին կարդացվում և այդ պատճառով էլ ոչ մի տպավորություն չէր թողնում:

Լինում են նաև դեպքեր, երբ ընդհակառակը, թերթում կան բավականին հարուստ նյութեր, հետաքրքիր տեղեկություններ, բայց շատ քիչ ընթերցողներ են մոտենում, որովհետև այնքան անգույն է ձևավորված, որ թվում է, թե այնտեղ հետաքրքիր ոչինչ չի լինի:

Դրա համար էլ ձևավորելիս չպետք է ընկնել ծայրահեղությունների մեջ:

Պատի թերթի ձևավորման մեջ մեծ նշանակություն ունի վերնագիրը (ճակատը). այն չպետք է անցնի թերթի մեկ քառորդ մասից: Եթե թերթի անունը կազմված է երկու բառից, չպետք է տառատեսակով դրանք իրարից բաժանել: Մանավանդ, երբ այդ բառերը շաղկապված են իրար: Գունավորման ժամանակ ևս չպետք է ամեն տառ իրարից զատել գույներով: Թերթի վերնագիրը պետք է լինի միանական և կարդացվի միանգամից: Վերնագիրը կարող է գրվել ճակատի կենտրոնում կամ






աջ գլխամասում: Թերթի համարըն իր մեծությամբ չպետք է անցնի վերնագրի կեսից, իսկ ավելի փոքր պիտի գրվի թերթի օրգանը:

Վերնագրի մասում նկարներ առհասարակ ցանկալի է, որ քիչ լինեն, լինելու դեպքում էլ, պետք է կապված լինեն վերնագրի հետ և օգնեն նրան: Վերնագիրը գրելիս խուսափեք ծաղիկներով և տերևներով տառերը գեղեցկացնելուց, հաճախ դա ոչ թե ուժեղացնում, այլ չափազանց թուլացնում է թերթի ձևավորումը:

Սովորաբար նյութերի վերնագրերի առաջին տառը միշտ գունազարդում և ձև են տալիս: Պետք է խուսափել դրանից: Վերնագիրը, եթե ուզում եք ընդգծել, դա արեք տարբեր հաստության գծերով, միայն թե չկորցնենք վերնագրի ամբողջականությունը:

Թերթը սյունակների բաժանելու ժամանակ կրկին խուսափեք խայտաբղետ նախշերից կամ, ինչպես հաճախ արվում է, հաստ և ոչ մի ազգային ճարտարապետության հետ կապ չունեցող սյուներից, ի դեպ ազգային ճարտարապետական զարդանկարներ միայն կարելի է օգտագործել տեղին և չափավոր: Եթե թերթը տոնական է, կարելի է ամեն նյութի համար ստեղծել թափանցիկ և հաճելի գունային ֆոն, դա հեռվից ավելի կաշխուժացնի թերթը:

Ցանկալի է, որ թերթը միշտ լուսանցքներ ունենա, պետք չէ այն լցնել զանազան անճաշակ նախշերով: Ամեն մի նյութի վերջում կարելի է փոքրիկ վերջնանկար դնել, այնպես, որ հեռվից աչքի չընկնի:

Լուսանկարները թերթում փակցնելն այնքան էլ հաճելի

չէ, բայց անհրաժեշտության դեպքում կարելի է մեկ-երկու հատ, այն էլ առանց շրջանակների մեջ առնելու:

Նյութերը պետք է դասավորել անհամաչափ կերպով, որպեսզի միապաղաղություն չլինի: Խուսափեք նյութերը տարբեր գույնի թանաքով գրելուց, իսկ ձեռագիրը պետք է լինի մեկ և գեղեցիկ:

Շատ հաճախ թերթի վերնագրի ընտրելուց հետո նկարում են մի հիմնական ճակատ և այն թողնում ամբողջ տարին, փոխելով միայն նյութերը: Դա ոչ մի օգտակար բան չի բերի, ընդհակառակը, թերթը կդառնա հնամաշ՝ որքան էլ այն թարմացվի նյութերով: Պետք է ամեն մի նոր թերթի հետ փոխել և ճակատը:

Այս կանոնները, իհարկե, վերջնական և իդեալական չեն, բայց հետևելով վերը նշված խորհուրդներին, ձեր թերթը կլինի ավելի լավ:

*ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆ*
*(Նկարիչ)*

**Նշանավոր մարդկանց կյանքից**



### ՀԱՆՃԱՐԵՂ ՖՈՒՏԲՈԼԻՍՏԸ

Դանիական նշանավոր ֆիզիկոս Նիլս Բորը երիտասարդ ժամանակ չափազանց հափշտակված էր ֆուտբոլով: Նա այնքան հմուտ խաղացող էր, որ Դանիայի ազգային թիմը վստահեց նրան իր դարպասի պաշտպանությունը: Բայց երբ հակառակորդը թույլ էր և Դանիայի հավաքականի դարպասի մոտ անդորրություն էր տիրում, Նիլսի ուշադրությունը փոխադրվում էր ֆիզիկայի վրա: Աչքի պոչով նայելով դաշտին, նա կատարում էր հաշվումներ և դարպասի ձողերի վրա գրում արտասովոր ֆորմուլաներ:



### ԹԱՇԿԻՆԱԿԻ ՓՈԽԱՐԵՆ

Նշանավոր գիտնական Անդրե-Մարի Ամպերը շատ ցրված և դյուրահավատ մարդ էր: Դասախոսության ժամանակ կանգնելով գրատախտակի առաջ, նա այնքան էր տարվում նյութի բացատրությամբ, որ երբեմն թաշկինակի փոխարեն կավճոտ ջնջոցով էր մաքրում երեսը: Ունկնդիրները զվարճանում էին, ասելով, թե իբր չեն ջոկում գրատախտակի վրա նրա գրած թվերը: Եվ դյուրահավատ պրոֆեսորը կամաց-կամաց այնքան էր մեծացնում, որ հաճախ գրատախտակի վրա հազիվ հինգ թվանշան էր տեղավորվում:

# ՊՏՂԱՏՈՒ ԱՅԳԻ ՊԱՏՇԳԱՄԲՆԵՐՈՒՄ

*Սիրելի երեխաներ, պատկերացրեք, թե ձեր տանը հյուրեր կան և դուք ուզում եք նրանց հյուրասիրել մրգով: Խնձորը ամանով մատուցելու փոխարեն, դուք ճաշասենյակից դուրս եք գալիս պատշգամբ, գրկում կարմրաթուշ խնձորներով զարդարված մի ծառ և բերում դնում եք սեղանին:*

*— Խնդրե՛մ, ինքներդ ծառից պոկեք ձեր ուզած խնձորը և անուշ արեք,— ժպտալով առաջարկում եք դուք:*

*Կարդալով այս տողերը, ձեզանից շատերը կտան զարմացած հարցը. «Մի՞թե դա հնարավոր է»: Այո՛, հնարավոր է: Ցանկության դեպքում դուք կարող եք ձեր բնակարանների պատշգամբներում ու պատուհանների գոգերում ստեղծել պտղատու այգի: Միանգամայն հասկանալի է, որ անհնար է ստեղծել այնպիսի մեծ ու ահռելի պատուհան, որի գոգում տեղավորվի պտղատու այգին իր հսկա ծառերով: Բայց դուք ի վիճակի եք այդ հսկա ծառերին ստիպել այնքան փոքրանալու, որպեսզի տեղավորվեն ձեր սովորական պատուհանների գոգերում կամ պատշգամբներում, միաժամանակ չկորցնելով պտղաբերելու իրենց լավագույն հատկությունը: Կավե ծաղկամաններ (թաղարներ) կարելի է գնել ծաղկի խանութներից, իսկ փայտյա ծաղկարկղներ կարող եք ինքներդ պատրաստել, որոնք պետք է ունենան 50 սմ բարձրություն և 35 սմ լայնություն: Այդ ամանների հատակին մի քանի անցք բացեք, հատակին 2—3 սմ հաստությամբ լցրեք խիճ, որից հետո 2 սմ խոշորահատիկ ավազ, ապա՝ հողը (երկու մաս սովորական մարգագետնային հող, մեկ մաս գոմաղբ, տերևահող և ավազ):*

*Այսպիսի թաղարների մեջ հիանալի կերպով կաճեն ձեր կողմից այնտեղ տնկված ծառերը, որոնք կամ նախօրոք պետք է պատվաստված լինեն, կամ էլ տնկելուց հետո պատվաստվեն թզուկ ծառատեսակների պատվաստակալի վրա:*

*Եթե դուք ցանկանում եք թզուկ, բայց պտղաբերող ծառ ունենալ, ապա պետք է սերկևիլենու 1—2 տարեկան տնկիների վրա պատվաստեք տանձենու չբացված բողբոջը կամ շիվը: Խնձորենու «Մարգախնձոր» տեսակը շատ լավ կաճի նման թաղարներում: Իսկ եթե ցանկանում եք ունենալ թզուկ կեռասենի,*

*սալորենի, բալենի, ապա դրանք պետք է պատվաստել Հայաստանի սարերում ու ձորերում աճող մամխենու վրա: Այս կարգով ստացված թզուկ ծառերը 1,5 մետրից ավել չեն բարձրանա, բայց փարթամորեն կարող են ծաղկել և առատ բերք տալ: Այս ծառերի արհեստական փոշոտումը (վրձնի ծայրով ծաղկի առէջների փոշին տեղափոխել վարսանդի գլխիկի վրա) և նրանց ուղիղ, վեր բարձրացող շիվերի խոր էտելը մեծ չափով բարձրացնում են նրանց բերքատվությունը:*

*Խաղողի «քիշմիշ», «զառան գմակ», «արարատ» տեսակները աճեցնելով ծաղկամաններում և խորը կերպով էտելով, դուք կարող եք ձեր պատուհանների գոգերում աճեցնել խաղողի փոքր վազեր, որոնք առատորեն բերք կտան: Նույն կերպ կարող եք աճեցնել հաղարջենու, մոշու և մորենու թփերը: Դրանք, կարելի է աճեցնել ուռենու դալար ճյուղերից հյուսված զամբյուղում և կախ տալ պատուհանների ու պատշգամբների առաստաղից, որպեսզի աճելով ցած թափվեն. դա ավելի գեղեցիկ է: Գարնանը, ամռանը և աշնանը այդ ծառերն ու թփերը պետք է թողնել բացօթյա պատուհաններում կամ պատշգամբներում, իսկ ձմռանը տեղափոխել երկու աստիճանից ոչ ավել տաք ու ոչ լուսավոր նկուղ:*

*Սիրելի երեխաներ, որպեսզի առատ բերք տվող թզուկային ծառեր ստանաք, պետք է ժամանակին ջրել, ավելորդ շիվերը էտել, հողը փխրեցնել և պարարտացնել:*

*ԱԼԲԵՐՏ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ*
*(Ինժեներ-դենդրոլոգ)*



## ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

Հայերեն առաջին քարտեզը տպագրվել է 1695 թվականին Ամստերդամ քաղաքում: Քարտեզը կազմել են Ղուկաս Նուրիջանյանը և Մաթևոս Վանանդեցին: Վիմագրել են հոլանդացի Սկոնեբեկ եղբայրները: Այս քարտեզի մի օրինակը գտնվում է Երևանի Մատենադարանում:

Առաջին հայերեն օրացույցը հրատարակել են Վենետիկի Մխիթարյանները 1757 թվականին:

Հռչակավոր պարուհի-դերասանուհի Էլեոնորա Տուզեն հայուհի էր, Կ. Պոլսի նշանավոր Տուզյան ընտանիքից:

Մետաքսի շերամը Ֆրանսիա է ներմուծել մի հայ՝ Ալթուն անունով, որի համար Ավինիոն քաղաքում կանգնեցրել են նրա արձանը:

Աշխարհում չկա մի քաղաք, որտեղ հայերն այնքան շատ գինեգործարաններ ունենան, որքան Ֆրեզնոյում: Այստեղ խաղողի թթենու, թզենու, ձմերուկի և սեխի մշակությամբ հայերն առաջին տեղն են բռնում ամբողջ Ամերիկայում:

Կ. Պոլսի բոլոր ճարտարապետական հոյակապ շենքերն ու հուշարձանները կառուցել են հանճարեղ Պալյանները, որոնք երեք հարյուր տարի շարունակ եղել են թուրքական արքունի ճարտարապետներ:

## ԱՌԱՋԻՆ ՓՈՍՏԱՐԿՂԸ

1486 թվականին փորթուգալացի Բարտոլոմեո Դիաշը Աֆրիկայի հարավում, ափից բավական հեռու, հայտնաբերեց Բուր հրվանդանը: Նա շրջանցեց այն և ծովային ճանապարհով հասավ Հնդկաստան: Հետագայում Բուրը կոչվեց Բարեհուսո հրվանդան: Այստեղ նավերը կանգ էին առնում և լրացնում խմելու ջրի պաշարը: Այդ ժամանակ Հնդկաստան գնացողները ափին ընկած մի մեծ քարի տակ նամակ էին դնում: Իսկ Եվրոպա վերադարձող նավերը վերցնում էին այդ նամակները, տանում իրենց հետ և հանձնում տերերին:

Այդ քարը, որ փոստարկղի դեր է կատարել, այժմ գտնվում է Կեյպտաունի քաղաքի թանգարանում:

## ՋՐՎԵԺ-ԹԱԳՈՒՀԻՆ

Աշխարհում նշանավոր ջրվեժներ շատ կան: Դրանցից է Իգուասու ջրվեժը, որը՝ գտնվում է Հարավային Ամերիկայում: Ջրվեժի ընդհանուր բարձրությունը 70 մետր է, իսկ ճակատային մասի լայնությունը՝ 3 կմ: Երբ տեղում են հորդառատ անձրևներ և ջուրը ծածկում է համանուն գետում ցրված բազմաթիվ կղզիները, ջրվեժի լայնությունը հասնում է 7 կիլոմետրի: Իգուասուն իր չափերով գերազանցում է աշխարհահռչակ Նիագարային, սակայն զիջում է վերջինիս իր ջրառատությամբ: Իգուասու ջրվեժի աստիճանից յուրաքանչյուր մեկ վայրկյանում գահավիժում է 3900 տոննա ջուր: Սակայն թափվող ջրի վիթխարի ուժը չի օգտագործվում: Գետը պայտաձև աստիճանից կատաղի հոսանքով սլանում է ցած, եռում, մռնչում, փրփրում անդունդի հատակին:

Անդունդից ծխի նման վեր են խոյանում ջրափոշու հսկայական սյուներ, որոնք մեղմորեն տարածվում են քամու ուղղությամբ: Ջրացայտերի մեջ շողշողում են արևի ճառագայթները: Ջրի աղմուկը լսվում է 20 կիլոմետրի վրա:

Բնության այս հոյակապ հուշարձանը Բրազիլիայի ամենաընդարձակ ազգային այգու թագուհին է համարվում:




# ՈՎՔԵՐ ԵՆ ՄԵՐ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ

## ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

Պատանի ընթերցող, դու ամեն ամիս ստանում և կարդում ես մեր ամսագիրը։ Բայց բազմահազար ընթերցողներից ո՞վ է ավելի ուշադիր կարդում. այդ հարցը պարզելու նպատակով «Պիոներ» ամսագրի խմբագրությունը որոշեց հայտարարել բաց մրցանակաբաշխություն։

Սահմանվում են առաջին և երկրորդ կարգի մրցանակներ։

Առաջին կարգի մրցանակները կստանան նրանք, ովքեր առաջադրված 24 հարցին կտան սպառիչ պատասխան։ Երկրորդ կարգի մրցանակները կտրվեն նրանց, ովքեր կպատասխանեն առնվազն 18 հարցի։

Բոլոր հարցերի պատասխանները կարելի է գտնել «Պիոների» 1963 թ. հունվար-սեպտեմբեր ամիսների համարներում։

Յուրաքանչյուր հարցի պատասխանը գրելուց հետո պետք է նշել այն նյութի վերնագիրը, որտեղից վերցված է պատասխանը, ինչպես նաև՝ թե «Պիոների» որ համարում է տպագրված։

Պատասխանները պետք է խմբագրությունն ստանա ոչ ուշ, քան հոկտեմբերի 10-ը (Հայաստանում ապրողների համար), հոկտեմբերի 15-ը (Սովետական Միության այլ քաղաքներում ապրողների համար) և հոկտեմբերի 25-ը (արտասահմանում ապրողների համար)։

Արդյունքները կհրապարակվեն նոյեմբեր ամսվա համարում։

Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել մինչև 15 տարեկան հասակի երեխաները։

Հաղթողները կպարգևատրվեն «Պիոներ» ամսագրի մեկ տարվա և 6 ամսվա բաժանորդագրությամբ, ինչպես նաև գրականությամբ։ Բացի այդ, հաղթողներին կտրվի համապատասխան հուշաթերթ։

Պատասխաններն ուղարկելիս պետք է գրել ազգանունը, անունը, տարիքը և հասցեն։

*1. Ինչո՞վ է նշանավոր Նովուսկ լիճը և որտե՞ղ է այն գտնվում։*

*2. Ի՞նչ կատարեց Մարիոն, երբ նավաստիները գոռացին. «Ամենափոքրի՛ն։ Մակույկն առանց այն էլ ծանրաբեռնված է»։ Խեղդվե՞ց արդյոք աղջիկը։ Ի՞նչ էր նրա անունը։*

*3. Ո՞ւմ են պատկանում հետևյալ տողերը. «Նա, ով մանկությունից գիտե, որ աշխատանքը՝ կյանքի օրենքն է, ով փոքրուց հասկացել է, որ հացը ձեռք է բերվում՝ միայն ճակատի քրտինքով, նա ընդունակ է սխրագործության...»*

*4. Հայաստանում մոտավորապես քանի՞ տեսակ ցորեն է մշակվում։*

*5. Ջելսոմինոյին որտե՞ղ գտավ թատրոնի դիրեկտորը։*

*6. Ի՞նչ լավ գործեր են կատարել Ստեփանավանի հայկական միջնակարգ դպրոցի № 1 ջոկատի պիոներները։*

*7. 19-րդ դարի անգլիացի գրող, որի մահվան առթիվ Հունաստանում 21 օրով հայտարարվել է համազգային սուգ։ Ո՞վ էր այդ գրողին հայերեն սովորեցնում և որտե՞ղ։*

*8. Կարմրածառի երկրորդ պուրակը Հայաստանի ո՞ր շրջանում է գտնվում և քանի՞ հեկտար տարածություն է զբաղեցնում։*

*9. «... Սա փառաբանված գրողի վեպ չէ, սա տասներեքամյա մի աղջկա օրագիր է, բայց ընթերցողին ավելի շատ է հուզում, քան վարպետորեն գրված գրքերը»։ Ո՞վ է այս տողերի հե-*



դինակը և ու՞մ մասին է ասված:

10. «Կանաչ ճառագայթ» զբոսայգում ե՞րբ էին ձնագնդի խաղում:

11. Ինչպե՞ս է այն դպրոցականի անուն-ազգանունը, որն այս տարվա մարտ ամսին շախմատային մրցությունում շահեց առաջին տեղը Բասարգեչարի շրջանում և իրավունք նվաճեց մասնակցելու դպրոցականների ռեսպուբլիկական մրցումներին:

12. Երկրորդ էքսպեդիցիան ո՞ր թվականին տեսավ Էյր լիճը: Ինչո՞վ է այդ լիճը հետաքրքիր:

13. Ի՞նչ պատասխանեց Ջեյնը, երբ մայրիկն ասաց նրան. «Ինչքան անգութ ես, Ջեյն, բա կարելի՞ է փիսիկի պոչից այդպես ուժեղ քաշել»:

14. Ի՞նչ էր այն մարդու անունը, որը «Հեյթանոս» փոքրիկ յախտայով որոշել էր մենակ կտրել անցնել Խաղաղ օվկիանոսը և հասնել Ավստրալիա: Ո՞ր արշիպելագի մոտ ջարդվեց նրա յախտան: Հետո ի՞նչ եղավ:

15. Ո՞ւմ նախաձեռնությամբ է մեր երկրում առաջին անգամ ստեղծվել լուսանկարչական գործիքների արտադրությունը: Ի՞նչ է նշանակում «ՖԵԴ»-ը:

16. Ո՞վ է «Սևանհէսի շինարարների հաղթանակը» նկարի հեղինակը:

17. Ամբողջ աշխարհում (առանց Սովետական Միության) տարեկան ինչքա՞ն կաուչուկ է արտադրվում:

18. Ո՞ր քաղաքում են տեղի ունեցել համաշխարհային օլիմպիական 16-րդ խաղերը:

19. Ինչո՞ւ էին իտալական Ալպերից հավաքած մրջյունները նավով փոխադրում Սարդինիա:

20. Ո՞ր դպրոցի և ո՞ր ջոկատի մասին է ասված. «Այնտեղ, ուր երբեք չեն նահանջում»:

21. Ո՞ր բանաստեղծությունից է վերցված այս քառյակը.

Հետո աստղեր՝ դուրս ճեղքից,
Հետո՝ լուսնի դեմքը սիրուն,
Ու քնում ես խոր ու հանգիստ,
Կարծես սուզվում ես աստղերում:

Ո՞վ է այդ բանաստեղծության հեղինակը:

22. Ո՞վ հնարեց ճոճանակով ժամացույցը և ե՞րբ:

23. Ի՞նչ կատարեց փոքրիկ Ծառուկը, որ օգնի Թորոս Ռոսլինին: Ինչի՞ համար նա զոհեց իր կյանքը:

24. Կեյպտաուն քաղաքի թանգարանում ի՞նչ նշանավոր քար կա դրված:

**ՄՐՑԱՆԱԿԱԲԱՑԽՈՒԹՅՈՒՆ**

ՄՐՑԱՆԱԿԱԲԱՑԽՈՒԹՅՈՒՆ

ՄՐՑԱՆԱԿԱԲԱՑԽՈՒԹՅՈՒՆ

ՄՐՑԱՆԱԿԱԲԱՑԽՈՒԹՅՈՒՆ

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2–44–83, 2–59–06:

ՎՖ 10391 Պատվեր՝ 1430: Տպաքանակ՝ 11.550: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 23 VIII 1963 թ.: ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91: Գինը 20 կ.






**ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ**



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ԱՐՏՈ ՉԱԳՄԱՔՉՅԱՆԻ

